Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

5

ՄԱՅԻՍ

1990

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է
1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ

ԵՐԵՎԱՆ

ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## Բովանդակություն

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս. (գլխավոր խմբագիր)
ԱՍԱՏՐՅԱՆ Գ. Ե.
ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ Լ. Բ. (գլխավոր խմբագրի տեղակալ)
ԽՈՋԱԲԵԿՅԱՆ Վ. Ե.
ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Լ. Մ.
ՀԱԿՈԲՅԱՆ Ռ. Յա.
ՀՈՎՍԵՓՅԱՆ Ս. Գ.
ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ.
ՄԵԼԻՔՅԱՆ Մ. Ա.
ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Մ. Դ.
ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ.
ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ.
ՍԻՄՈՆՅԱՆ Ս. Ա. (պատասխանատու քարտուղար)
ՖԱՆԱՐՋՅԱՆ Վ. Բ.

Խմբագրության հասցեն՝
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—22
պատասխանատու քարտուղար՝ 52—99—34
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

Բաժիններ

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 53—86—11
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թղթակից, սրբագրիչ՝ 53—86—11



# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1990 թվականի մայիսի 5-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը: Պլենումին հրավիրվել էին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բաժինների վարիչներ, կուսակցության քաղկոմների և շրջկոմների առաջին քարտուղարներ, ժողովրդական դեպուտատների քաղաքային և շրջանային խորհուրդների գործկոմների նախագահներ, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և վերստուգիչ հանձնաժողովի կազմի մեջ չմտնող Հայկական ԽՍՀ մինիստրները և պետական կոմիտեների նախագահները, խոշոր սկզբնական կուսակցական կազմակերպությունների քարտուղարները, մի շարք արդյունաբերական ձեռնարկությունների, բարձրագույն ուսումնական հաստատությունների ղեկավարներ, արհմիութենական և կոմերիտական աշխատողներ, զինծառայողներ, մասսայական ինֆորմացիայի միջոցների ներկայացուցիչներ:

Պլենումը քննարկեց Հայաստանի կոմունիստական կուսակցության հերթական XXIX համագումարի հրավիրման և հանրապետության կուսակցական կազմակերպություններում հաշվետու-ընտրական կամպանիայի անցկացման հարցը:

Այդ հարցի առթիվ զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Վ. Մ. Մովսիսյանը:

Զեկուցման շուրջ ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին ՀԿԿ Կենտկոմի գաղափարախոսական բաժնի վարիչի տեղակալ, ՀԿԿ Կենտկոմի քաղաքական լուսավորության տան վարիչ Ս. Հ. Ստեփանյանը, ՀԿԿ Վարդենիսի շրջկոմի առաջին քարտուղար Ռ. Ս. Ենգոյանը, ՀԿԿ Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար Տ. Գ. Սարգսյանը, ՀԿԿ Իջևանի շրջկոմի առաջին քարտուղար Ջ. Գ. Անանյանը, ՀԿԿ Ղափանի շրջկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Մկրտչյանը: Առաջարկություններով հանդես եկան Հայաստանի մշակույթի ֆոնդի վարչության նախագահ Վ. Հ. Պետրոսյանը, Երևանի մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտի կուսակցական կոմիտեի քարտուղար Ս. Ա. Ղափլանյանը, ՀԿԿ Երևանի 26 կոմիսարների շրջկոմի առաջին քարտուղար Ռ. Խ. Միրոյանը:

Պլենումը որոշեց Հայաստանի կոմունիստական կուսակցության հերթական XXIX համագումարը հրավիրել 1990 թվականի նոյեմբերի 22-ին Երևանում և այդ հարցի առթիվ ընդունեց որոշում:

Պլենումը լսեց Հայաստանի կոմկուսի ծրագրի մշակման մասին հարցը:

Այդ հարցի առթիվ զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Վ. Մ. Մովսիսյանը:

Մտքերի փոխանակությանը մասնակցեցին Երևանի «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման ապարատավարների բրիգադավար Ս. Մ. Պետրոսյանը, Երևանի «Հայէլեկտրաշարժիչ» արտադրական միավորման կուսակցական կոմիտեի քարտուղար Ա. Ֆ. Ծահումյանը, Անդրերկաթուղու Երևանի բաժանմունքի պետ Հ. Ա. Ղանդիլյանը, Երևանի պետական համալսարանի կուսակցական կոմիտեի քարտուղար Յու. Ի. Մկրտումյանը:

Պլենումը հաստատեց Հայաստանի կոմկուսի ծրագրի և կանոնադրության մշակման հանձնաժողովի կազմը:

Պլենումը լսեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի երկրորդ քարտուղար Օ. Ի. Լոբովի հաղորդումը Հայաստանի կոմունիստական կուսակցությունից ԽՄԿԿ XXVIII համագումարի պատվիրակների ընտրությունների անցկացման մասին և այդ հարցի առթիվ ընդունեց որոշում:

Պլենումը քննարկեց 1990 թվականի մայիսի 4-ին Երևանում տեղի ունեցած դեպքերի մասին հարցը: Այդ հարցի առթիվ ինֆորմացիայով հանդես եկավ ՀԿԿ

Երևանի քաղկոմի առաջին քարտուղար Գ. Ե. Ասատրյանը: Մտքերի փոխանակությանը մասնակցեցին «Հայկոոպի» վարչության նախագահ Մ. Հ. Մուրադյանը, Հայաստանի կոմպոզիտորների միության վարչության նախագահ Է. Մ. Միրզոյանը, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար Գ. Ա. Գալոյանը, ՀԿԿ Երևանի քաղկոմի երկրորդ քարտուղար Վ. Բ. Աղայանը:

Պլենումը ի գիտություն ընդունեց կուսակցության Երևանի քաղկոմի ինֆորմացիան և Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյին հանձնարարեց անհետաձգելի ու վճռական միջոցներ ձեռնարկել հանրապետությունում և նրա մայրաքաղաքում իրադրությունը նորմալացնելու, իրավակարգը ամրապնդելու համար:

Պլենումում եզրափակման խոսքով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Վ. Մ. Մովսիսյանը:

Դրանով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումն ավարտեց իր աշխատանքը:

Պլենումի աշխատանքին մասնակցում էր ԽՄԿԿ Կենտկոմի ապարատի պատասխանատու աշխատող Ռ. Վ. Ենգիբարյանը:

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ XXIX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՀՐԱՎԻՐՄԱՆ ԵՎ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ ՀԱՇՎԵՏՎՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՈՒ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՆՑԿԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ

## Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Վ. Մ. ՄՈՎՍԻՍՅԱՆԻ զեկուցումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումում, 5 մայիսի 1990 թ.

Ընկերներ:

Մեր ժողովուրդն ապրում է իր նորագույն պատմության թերևս ամենաբարդ ու դրամատիկ շրջանը, որը բնութագրվում է առանձնահատուկ սրությամբ, քաղաքական, սոցիալ-տնտեսական հրատապ խնդիրների լուծումների լարված որոնումով:

Վերակառուցումն ուղեկցվում է անչափ մեծ բարդություններով՝ օրենսդրությունը նորացվում է, իսկ օրենքները հաճախ չեն գործում: Նորը անասելի դժվարությամբ է ճանապարհ հարթում: Վախվորելով անչափ մեծ պատասխանատվությունից՝ մարդիկ սպասողական, պասիվ դիրք են գրավում: Ցավալի է, երբ աչքը վարժվում է անկարգությանը, ամենաթողությանը, երբ անհանդուրժելի երևույթների մասին սկսում ենք խոսել հանդուրժելի շեշտերով, երբ հեշտությամբ հաշտվում ենք անհաշտելիի հետ, երբ գործնական քայլերը բացարձակապես անհամարժեք են ստեղծված իրավիճակին: Իսկ որ մեզանում իրոք արտակարգ իրավիճակ է ստեղծվել, դա արդեն փաստ է և այն խորությամբ պետք է գիտակցեն բոլորը:

Խոսքը ոչ միայն տնտեսական, քաղաքական, հոգեբանական ու թերևս նաև բարոյական ճգնաժամի մասին է: Վիճակն ավելի է բարդանում նրանով, որ մենք երկրաշարժի ու բռնագաղթվածների պրոբլեմների բեռով, արցախյան խնդրի ու ազգամիջյան հարաբերությունների նոր բարդացումներով, մարդկանց անհագնացող սոցիալական անբավարարվածությամբ, խարխլված հասարակական ու տնտեսական կառուցվածքներով կանգնած ենք էապես նոր հարաբերությունների անցման նախաշեմին: Դրանք վերաբերում են ոչ միայն միութենական հանրապետությունների փոխհարաբերություններին նորացվող ֆեդերացիայի կազմում, այլև ընդգրկում են մեր հասարակարգի բոլոր կողմերն ու շերտերը: Այդ նման իրավիճակում մենք պարտավոր ենք ուժ ու միջոցներ գտնել ոչ միայն դուրս գալու խորացող վիճից, այլև ոտքի կանգնելու և մեր սուվերեն իրավունքների տերը դառնալու, լուծելու որակապես նոր խնդիրներ:



Հաջողության գրավականը մեր բոլորի համառ ու տքնաջան աշխատանքն է: Այսօր ազգովի պետք է գիտակցենք ու լծվենք ստեղծված կացության վերափոխմանը, յուրաքանչյուրը պետք է զգա ու իմանա իր տեղն ու դերը այս անչափ պատասխանատու ու բախտորոշ գործում:

Ցավոք, դեռևս նման տիպի հասարակական մթնոլորտ մեզանում չի ստեղծվել: Այդ մասին վկայեց նաև Գերագույն խորհրդի վերջին՝ արտահերթ նստաշրջանը: Ինչի է նման, երբ հանրապետության և մեր ժողովրդի համար կենսական կարևորության հարցեր քննարկելիս, դրանց համար իսկ պատասխանատու մեր մեծ թվով պաշտոնատար անձինք, Կենտկոմի ու նրա բյուրոյի անդամներ, կառավարության նախագահի տեղակալներ ու մինիստրներ, պետական կոմիտեների ու տարբեր գերատեսչությունների ղեկավարներ անթույլատրելի ու անհանդուրժելի պասիվություն հանդես բերեցին: Ինձ ճիշտ հասկացեք, ընկերներ, այսօր ոչ ոքի իրավունք չի տրված թաքնվել ստվերում, չարտահայտել սեփական «եսը», չընդգծել իր դիրքորոշումը, չառաջնորդվել որոշակի ու կայուն բարոյական սկզբունքներով: Չէ որ հասարակության ճգնաժամը սկսվում է հենց բարոյական ճգնաժամից:

Նման պասիվությամբ ու անտարբերությամբ, անդեմ դիրքորոշումով, առանց մարդկանց ու կոլեկտիվների հետ լուրջ ու հետևողական աշխատանքի, առանց անօրինականություններին վճռականապես վերջ դնելու մենք որևէ հաջողության չենք հասնի:

Հանրապետությունն ընդգրկած ճգնաժամը հիվանդագին է զուգակցվում նաև հասարակական զարգացման լուրջ հակասության՝ տարանջատվածության, ժողովրդի ճակատագրի, նրա ուղու պատմական ընտրության համար պատասխանատվություն կրող քաղաքական առկա ուժերի երբեմնի տարաբնեովածության հետ: Այս հանգամանքը մեծապես բացատրվում է կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների դերի և հեղինակության նվազումով, որոնք որոշակի աստիճանում, ինչպես ամենուրեք երկրում, բաց թողեցին նախաձեռնությունը մարդկանց հուզող հարցերի առաջադրման ու լուծման գործում:

Սոցիալիստական նորացումը չի կարող տեղի ունենալ առանց կուսակցության, նրա յուրաքանչյուր ջոկատի, կառուցվածքների և ղեկավար մարմինների, աշխատանքի եղանակների ու ոճի արմատական նորացման: Բեկումնային փուլում ամենից առաջ հարկավոր է ունենալ գաղափարապես և կազմակերպորեն ամուր կուսակցություն, որը գործեր լայն դեմոկրատիայի հիման վրա, մեծագույն պատասխանատվություն կրեր ժողովրդի հանդեպ: Այդ առումով հրամայական է դարձել բուն ԽՄԿԿ-ի, նրա ղեկավար մարմինների գործունեության մեջ խոր փոփոխություններ մտցնելու հրատապ անհրաժեշտությունը: Պետք է ոչ միայն նորովի իմաստավորել կուսակցության պարտականությունները, նրա տեղը քաղաքական համակարգում, այլև մշակել ու յուրացնել աշխատանքի նոր եղանակներ: Կուսակցությունը պետք է վերածնի և ամրապնդի քաղաքական աշխատանքի լավագույն ավանդույթներն ու սկզբունքները՝ դառնալով ժողովրդական զանգվածների շահերի ամենաակտիվ արտահայտիչը, ձերբազատվի իրեն ոչ հատուկ կառավարչական ֆունկցիաներից: Այդ մասին հանգամանալից և սուր խոսակցություն տեղի ունեցավ ԽՄԿԿ Կենտկոմի 1990 թվականի փետրվարյան պլենումում, որը քննարկեց կուսակցության XXVIII համագումարի առթիվ ԽՄԿԿ Կենտկոմի պլատֆորմի նախագիծը:

Ինչպես ասացինք, վերակառուցման գործընթացները դժվարին են, հակասական, երբեմն՝ տենդագին: Իրավիճակը բարդացել է ազգամիջյան հարաբերությունների տևական սրմամբ: Հասարակության մեջ աճում է քաղաքական և սոցիալական լարվածությունը: Այդ ամենը օրակարգի հարց է դարձնում Հայաստանի կոմունիստական կուսակցության հերթական համագումարի հրավիրումը: Նման առաջարկությամբ հանդես են եկել մի շարք սկզբնական կուսակցական կազմակերպություններ՝ խորապես մտահոգված հանրապետության քաղաքական իրադրությամբ, Հայաստանի կոմկուսի գործունեության վերակառուցման անհետաձգելի խնդիրներով: Առաջարկվում են հանրապետության կոմկուսի համագումարի հրավիրման տարբեր ժամկետներ: Ավելին, անգամ պահանջվում է անհապաղ հրավիրել կոմունիստների արտահերթ համաժողով:

Ուսումնասիրելով բոլոր առաջարկությունները, Կենտկոմի բյուրոն պաշտպանում

է Հայաստանի կոմկուսի հերթական՝ XXIX համագումար հրավիրելու գաղափարը և առաջարկում այն անցկացնել 1990 թվականի նոյեմբերի երկրորդ կեսին:

Ինչո՞վ է պատճառաբանվում նման մոտեցումը:

Նախ, անհրաժեշտ է խորապես ու բազմակողմանիորեն նախապատրաստվել համագումարին, որը որակապես կտարբերվի նախորդներից ինչպես իր նպատակներով ու խնդիրներով, այնպես էլ՝ իր նկատմամբ առաջացրած հետաքրքրությամբ:

Երկրորդ. մոտակա ժամանակաշրջանում մեր առջև դժվարին ու պատասխանատու կամպանիա է՝ Հայկական ԽՍՀ և տեղական խորհուրդների ժողովրդական դեպուտատների ընտրությունները, որոնք կպահանջեն համախմբել բոլոր կուսակցական կոմիտեների ու կազմակերպությունների ջանքերը:

Երրորդ. մի շարք կոմիտեների ու կուսկազմակերպությունների կարծիքով, հասունացել են անհրաժեշտ պայմանները Հայաստանի կոմունիստական կուսակցության ծրագրի ընդունման համար, որն իր մեջ կներառի Հայաստանի կոմկուսի ներկա վիճակն արտահայտող հիմնարար գաղափարները, նպատակներն ու խնդիրները, դրանց լուծման ուղիները: Այսօրվա մեր պլենումը կհաստատի ծրագրի նախագիծը մշակող հանձնաժողով:

Հաշվի առնելով վերը շարադրվածը, առաջարկվում է Հայաստանի կոմկուսի XXIX համագումարի հետևյալ օրակարգը.

1. Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը:
2. Հայաստանի կոմկուսի վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը:
3. Հայաստանի կոմկուսի ծրագրի նախագծի մասին:
4. Հայաստանի կոմկուսի ղեկավար մարմինների ընտրությունները:

Ինչ վերաբերում է համագումարի ներկայացուցչական նորմաներին և պատգամավորների ընտրության կարգին, այսօր մենք կարող ենք հանձնարարել Կենտկոմի բյուրոյին մշակելու համապատասխան առաջարկություններ և դրանք ներկայացնելու Կենտկոմի պլենումի քննարկմանը:

Ընկերներ:

Հայաստանի կոմկուսի համագումարի համակողմանի նախապատրաստումը և հաջող անցկացումը, անկասկած, պայմանավորված կլինի սկզբնական, շրջանային ու քաղաքային կազմակերպություններում տիրող իրավիճակով, հաշվետու-ընտրական կամպանիայում նրանց ակտիվությամբ ու նախաձեռնությամբ: Այսօր կուսակցության ստորին օղակներում հաշվետվությունների և ընտրությունների անցկացման հարցը բավականին սուր է դրված: Ձեզ քաջ հայտնի են փաստարկները մինչև կուսակցության համագումարը ժողովների ու կոնֆերանսների հնարավոր հրավիրման մասին: Սակայն հանրապետության մեծ թվով սկզբնական կազմակերպություններ, քաղկոմներ ու շրջկոմներ գտնում են, որ դրանք պետք է անցկացնել ԽՄԿԿ համագումարից հետո, իսկ շատերը կոնկրետ մատնանշում են առավել նպատակահարմար ժամկետներ, այն է՝ ընթացիկ տարվա օգոստոս-հոկտեմբերը:

Նրանք իրենց դիրքորոշումն առաջին հերթին հիմնավորում են այն բանով, որ հաշվետվություններն ու ընտրությունները, ժամանակի առումով, փաստորեն ամբողջովին կզուգադիպեն Հայկական ԽՍՀ ժողովրդական դեպուտատների ընտրություններին:

Ժողովներն ու կոնֆերանսները ԽՄԿԿ XXVIII համագումարից հետո անցկացնելու օգտին կուսակցական կազմակերպությունները կարևոր փաստարկների շարքում նշում են նաև հետևյալը.

— Կոմունիստներն իրենց ժողովներին կգան, ունենալով արդեն ԽՄԿԿ համագումարում ընդունված ԽՄԿԿ Կենտկոմի պլատֆորմը և կուսակցության կանոնադրությունը, ինչպես նաև Հայաստանի կոմկուսի ծրագրի նախագիծը:

— ԽՄԿԿ համագումարից հետո հաշվետվությունների ու ընտրությունների անցկացումը միաժամանակ չի խանգարի պլատֆորմի և կուսակցության կանոնադրության նախագծերի շուրջ քաղաքական բանավեճերի անցկացմանը կուսակցական կազմակերպություններում:

— Ժողովրդական դեպուտատների հանրապետական և տեղական խորհուրդների ընտրությունները վճռական քննություն կհանդիսանան ոչ միայն ամբողջ կուսակցության, այլև կուսակցական կադրերի համար: Այն հանգամանքը, թե նրանք ինչպիսի քննություն կբռնեն, ժողովներին ու կոնֆերանսներին հնարավորություն կընձեռի



որոշելու իրենց վերաբերմունքը կուսակցական կադրերի նկատմամբ, հրապարակ կգան նոր մարդիկ:

— Մայիսին մեզ անհրաժեշտ է անցկացնել ԽՄԿԿ XXVIII համագումարի պատգամավորների ընտրությունները, որոնք նույնպես կազմակերպական մեծ աշխատանք պահանջող քաղաքական կամպանիա են:

— Վերջապես, հուլիսին պետք է կայանան ժողովրդական դեպուտատների տեղական խորհուրդների ընտրությունները:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն գտնում է, որ տվյալ իրավիճակում ճիշտ կլիներ հաշվետվությունների և ընտրությունների անցկացման ժամկետները որոշելու իրավունքը տալ հենց կուսակցության քաղկոմներին ու շրջկոմներին: Նրանք կկարողանային այդ հարցը լուծել, ելնելով տեղական պայմաններից և հաշվի առնելով Հայաստանի կոմկուսի համագումարի անցկացման ժամկետը:

Հանրապետության քաղաքական, տնտեսական ու հոգևոր կյանքի նոր որակը, որով մենք թևակոխեցինք 1990 թվականը, հաշվենկատ է հանդիսանում մշակելու համար մեր զարգացման խնդիրները մինչև Հայաստանի կոմկուսի առաջիկա համագումարը:

Թույլ տվեք համառոտակի անդրադառնալ դրանց:

Քաղաքական իրավիճակը և իրադարձությունների զարգացման տրամաբանությունը կոմունիստներից պահանջում են վճռական դեր խաղալ կուսկազմակերպությունների, կուսակցության քաղկոմների, շրջկոմների և ստորին օղակների գործունեության ոճի եռանդուն նորացման, աշխատանքի նոր ձևերի ու մեթոդների հաստատակամ որոնման, գործողությունների կոնկրետ ծրագրերի մշակման, անհետաձգելի կադրային հարցերը լուծելու գործում: Ծայրաստիճան կարևոր է ուշադրությունը կենտրոնացնել այն հարցերի գործնական լուծմանը, որոնք ամենուրեք դժգոհություն են առաջացնում աշխատավորական կոլեկտիվներում և փաստորեն հիմք ծառայում կուսակցական կազմակերպությունների հասցեին արված արդարացի քննադատության համար: Հանրապետության համար բեկումնային փուլում անհրաժեշտ է, որ յուրաքանչյուր կուսակցական կազմակերպություն և կոմիտե ունենա գործողությունների հստակ ծրագիր, որը համապատասխանի կոնկրետ պայմաններին ու աշխատավորական կոլեկտիվի, քաղաքի, շրջանի սոցիալ-տնտեսական զարգացման խնդիրներին, կողմնորոշված լինի վերակառուցման ժամանակակից պրոբլեմների լուծմանը:

Վերջերս հրապարակվեց ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեի բաց նամակը երկրի կոմունիստներին: Կուսակցության Կենտկոմը կողմնակից է կուսակցության շարքերի համախմբմանը սկզբունքային դիրքերի վրա, բոլոր նրանց կայուն միասնությանը, ում համար թանկ են վերակառուցման նպատակները, դեմոկրատական սոցիալիզմի իդեալները:

Հարկ է լրջորեն ու սկզբունքային դիրքերից քննարկել ԽՄԿԿ առանձին անդամների պասիվ, անտարբեր դիրքորոշման, նրանց կողմից կոմունիստի կոչման վարկաբեկման դրսևորումներն ու փաստերը: Պետք է բացահայտել նաև մի շարք կուսակցական ընտրովի մարմինների, կադրային աշխատողների հեղինակության անկման կոնկրետ պատճառները և անհրաժեշտ քայլերի դիմել: Վերակառուցման ընթացքում իրեն խորթ շատ տարրերից կուսակցությունն արդեն ազատվել է, մյուսներից դեռևս կազատվի: Եվ դա անհրաժեշտ, առողջարար պրոցես է: Պետք է հաստատակամորեն հետամուտ լինել ընդունված որոշումների կատարման նպատակով գործողությունների միասնության ապահովման, պետական կարգապահության ամրապնդման խնդրին:

Կցանկանայի ձեր ուշադրությունը հրավիրել նաև հետևյալ հարցի վրա: Երևան քաղաքում վերջին օրերին տեղի են ունենում լուրջ մտահոգություն պատճառող մի շարք միջադեպեր: Այն, ինչ այսօր կատարվում է մայրաքաղաքում, ոչ միայն բացահայտ անիշխանության ու ամենաթողության դրսևորում է, այլև լի է հեռուն գնացող ամենաբարդ հետևանքներով: Հարձակումը Գերագույն խորհրդի և ապա՝ պետական անվտանգության կոմիտեի վրա, Շահումյանի, Չեխովի և այլ արձանների տեղահանումը, փողոցների անվանումները, երեկ արդեն ցուցադրական զինված հարձակումը քաղաքային կոմիտեի և ՀԼԿԵՄ Կենտկոմի վրա այն բանի վկայությունն են, որ կան ուժեր, որոնք բացահայտորեն փորձում են գնալ առճակատման, արյունահեղության ու անկայուն իրադրության ստեղծման: Նման ձեռնարկումները ոչ դեմոկրատիայի և ոչ էլ հայրենասիրության հետ որևէ կապ չունեն: Իրերը պետք է

նելու պատմական պատասխանատվությունը ժողովրդի բախտի համար:

Այս պարագայում խիստ անհրաժեշտ է, որ Հայաստանի կոմկուսն ունենա իր սեփական ծրագիրը:

Որքան էլ համապարփակ ու կշռադատված լինի Խորհրդային Միության կոմունիստական կուսակցության ծրագիրը, այն չի կարող իմաստավորել ու սահմանել բոլոր այն արմատական, բախտորոշ խնդիրները, որոնք մեր ժողովրդի ապրած ծանր ու դրամատիկ ժամանակաշրջանը առաջադրել է Հայաստանի կոմունիստներին:

Մյուս կողմից, այժմ խոշոր միջոցառումներ են իրականացվում հիմնովին նորացնելու մեր ֆեդերացիան, միութենական հանրապետություններին օժտելու հիրավի սուվերեն իրավունքներով, կնքելու նոր պայմանագրեր ինչպես Կենտրոնի, այնպես էլ հանրապետությունների հետ: Նման պայմաններում միանգամայն անհրաժեշտ է ու բնական, որ սուվերեն հանրապետության կոմունիստական կուսակցությունն ունենա սեփական ծրագիր:

ԽՄԿԿ Կենտկոմի 1990 թվականի փետրվարյան և մարտյան պլենումներից, Խորհրդային Միության ժողովրդական դեպուտատների երրորդ համագումարից հետո կոմունիստական կուսակցության համար ստեղծվել է նոր իրադրություն, երբ նա հասարակության առաջատարի իր դիրքերը պետք է կարողանա ապահովել քաղաքական այլ կուսակցությունների մրցակցության պայմաններում, նրանց հետ վարելով քաղաքական ազնիվ երկխոսություն, չխուսափելով գաղափարական պայքարից, նաև համագործակցելով, երբ խնդիրը վերաբերում է ժողովրդի արմատական շահերին: Սա կոմկուսի համար անսովոր ու դժվարին իրավիճակ է, բայց միայն այդպես մենք ի զորու կլինենք վերագտնելու ժողովրդի վստահությունը:

Հայաստանի կոմկուսի արմատական վերափոխման, այդ թվում՝ սեփական ծրագրի ստեղծման անհրաժեշտությունը բխում է նաև մեր հանրապետությունում տիրող իրավիճակից: Վերջերս ես առիթ ունեցել եմ անդրադառնալու, մասնավորապես, մեր կուսակցական կազմակերպությունում ստեղծված պասիվ, հայեցողական դիրքորոշմանը: Մենք՝ կոմունիստներս, հենց սկզբից չկարողացանք գտնել մեր արժանի տեղը համաժողովրդական շարժման մեջ, չգնացինք բաց, անկաշկանդ երկխոսության: Ժամանակն է թոթափել չեզոքության թմբիրը, ստեղծել գաղափարական և գործնական աշխատանքի լայն ծրագիր, որը կարողանա միավորել մեր ժողովրդի լավագույն ուժերը:

Այսօր արդեն կասկածից վեր է, որ երկրի և հանրապետության հասարակական-քաղաքական կյանքի արմատական տեղաշարժերը, էկոնոմիկայի և էկոլոգիայի ասպարեզում ահագնացած ճգնաժամը, ավերիչ երկրաշարժի հետևանքների վերացման աններելի դանդաղ տեմպերը, բռնագաղթվածների անմխիթար վիճակը, բնակչության նյութական և հոգևոր պահանջմունքների բավարարման բազմամարդ խնդիրները Հայաստանի կոմունիստներին դրել են հետագա գործունեության խելամիտ, բազմակողմանիորեն կշռադատված ծրագիր ունենալու անհրաժեշտության առջև:

Թերևս հարկ չկա անդրադառնալու այդ ծրագրի մանրամասներին: Ծրագրի նախագիծը փաստորեն նոր պետք է մշակվի, բնականաբար ներառելով կուսակցության Կենտկոմի հանձնաժողովների մշակած և նախօրոք ձեզ բաժանված Կենտկոմի պլատֆորմի հիմնական դրույթները: Այդ պլատֆորմը առանձին քննարկման նյութ կդառնա Կենտկոմի առաջիկա պլենումում: Դրա հետ մեկտեղ չպետք է ձգձգել կուսակցության ծրագրի նախագծի նախապատրաստման գործը՝ հարկ է առավելագույնս հաշվի առնել սկզբնական կազմակերպությունների առաջարկները, արդեն իսկ կազմված մի շարք նախագծերը, մեզանում ստեղծված իրավիճակի առանձնահատկությունները:

Մեր կարծիքով, առաջին հերթին պետք է հստակորեն ձևակերպվեն կոմկուսի ընդհանուր նպատակները, որոնցից ամենաէականը այնպիսի հասարակության կառուցումն է, որը կապահովի հանրապետության բոլոր քաղաքացիների, հայ ժողովրդի նյութական և հոգևոր պահանջմունքների բավարարումը, նրա անվտանգ գոյատևումը: Այդ նպատակին հասնելու երաշխիքը հանրապետության սուվերենությունն է՝ խորհրդային հանրապետությունների բարեփոխվող ֆեդերացիայի կազմում:

Արտահայտելով հանրապետության կոմունիստների կարծիքը, Հայաստանի կոմկուսը պետք է հանդես գա ձևախեղումներից զտված, նորացված սոցիալիզմի օգտին, այնպիսի հասարակարգի օգտին, որի հիմքում դրված են դեմոկրատիայի, ազատության, մարդասիրության և սոցիալական արդարության սկզբունքները:



Ծրագրի այս բաժնում անհրաժեշտ է նաև հստակ ու ճշմարտացի բնութագրել Հայաստանի կոմկուսի անցած ուղին, նրա արդի դիրքորոշումը՝ ազգային, հասարակական-քաղաքական տարբեր շարժումների ու կուսակցությունների նկատմամբ:

Հասկանալի է, որ ծրագրում հաշվի կառնվեն Հայաստանի ազգային, պատմական, էթնիկական, մշակութային, սոցիալ-տնտեսական, աշխարհագրական և այլ յուրահատկությունները:

Կարծում եմ, ճիշտ կլինի, եթե մեր կուսակցության ծրագրում արծարծվեն իրավական պետության ստեղծման մեր պատկերացումները, հրաժարումը մարքս-լենինյան տեսության դոգմատիկ մեկնաբանություններից, կողմնորոշումը դեպի համամարդկային արժեքները, վճռական շրջադարձը դեպի դեմոկրատիայի ուղին և այլ հիմնարար գաղափարներ: Հայաստանի կոմկուսը հանրապետության հասարակական կյանքում գրավելիք իր տեղի համար կպայքարի հստակ, արժանապատիվ ու ազգանվեր քաղաքականությամբ, մարդկանց համախմբելու ունակությամբ, մեր ժողովրդի բարոյական արժեքների նկատմամբ իր հավատարմությամբ:

Սոցիալ-տնտեսական քաղաքականության ասպարեզում Հայաստանի կոմկուսի ծրագրային նպատակը պետք է լինի հանրապետության տնտեսական անկախության ապահովումը: Բազմակացութաձև տնտեսությունը պետք է հիմնվի ազատ շուկայական հարաբերությունների, սեփականության հավասարազոր ձևերի և տնտեսական մեթոդներով շուկայի կարգավորման մեխանիզմի վրա:

Կարևորագույն խնդիրն, անշուշտ, տնտեսական ինքնուրույնության պայմաններում ժողովրդատնտեսական համալիրի ձևավորումն է, մեր հնարավորությունների առավելագույն օգտագործումը, տնտեսավարման նոր կոնցեպցիայի իրացման գործնական մեխանիզմների ու օրենսդրական նախադրյալների մշակումը: Առանց նման ծրագրերի ու հստակ հեռանկարի մեզ չի հաջողվի դրականորեն ներգործել սոցիալ-տնտեսական զարգացման պրոցեսների վրա, կշռադատված կերպով հաշվի առնել մեր ժողովրդի պատմության և արդիականության դասերը, ստեղծել տնտեսական իրավիճակի ակտիվ վերափոխման միջավայր:

Մենք իրավունք չունենք մոռանալ, որ ստեղծված քաղաքական իրադրության պայմաններում չի բացառվում, նույնիսկ մեր կամքին ու ցանկությանը հակառակ, հայտնվելու տարածքային կամ տնտեսական մեկուսացման մեջ: Ուրեմն, մեր խնդիրը ոչ միայն էկոնոմիկայի ճգնաժամի հաղթահարումն է, այլև ինքնուրույն գոյատևելու համար կենսականորեն անհրաժեշտ պայմանների ստեղծումը:

Ընդ որում, մենք պարտավոր ենք խելամիտ գնահատել ու ճշտությամբ հաշվի առնել մեր ազգային հատկանիշներն ու առանձնահատկությունները, ժողովրդի հոգեբանությունն ու ավանդույթները, բնական, աշխարհագրական ու կլիմայական գործոնները: Մեխանիկորեն չպետք է գնալ այլ հանրապետությունների ու երկրների մոտեցումների ուղղակի պատճենահանմանը:

Ծրագիրը նպատակամղված պետք է լինի նաև հողային ռեֆորմի իրականացմանը, հանրապետության տնտեսությունը համաշխարհային տնտեսական կապերի մեջ ներառելու, համատեղ ձեռնարկությունների լայն ցանց ստեղծելու, ինչպես նաև ազատ ձեռնարկչության սկզբունքները հետևողականորեն ներդնելու խնդիրների լուծմանը:

Որպես առանձնահատուկ կարևորության հարց պետք է դիտվի երկրաշարժի հետևանքների հաղթահարումը, այդ գործում՝ մեր սեփական մասնակցության բաժնի լուրջ մեծացումը, հանրապետության հնարավորությունների առավելագույն օգտագործումը:

Հատուկ ուշադրություն պետք է դարձվի սոցիալական արդարության սկզբունքների և քաղաքացիների սոցիալական պաշտպանվածության ապահովման, բռնագաղթվածների պրոբլեմների լուծման, մարդկանց առողջության և շրջակա միջավայրի պահպանության, մեր հանրապետության համար կարևոր նշանակություն ունեցող մյուս հարցերին:

Ծրագրում պետք է արտացոլվեն Հայաստանի կոմկուսի ազգային քաղաքականության սկզբունքները՝ ինքնորոշման իրավունքի ճանաչումը, շովինիզմի և ազգայնամոլության մերժումը, յուրաքանչյուր ազգի համար նրա մշակույթի, լեզվի ազատ զարգացման, ազգային յուրօրինակության և ավանդույթների պահպանման իրավունքի ճանաչումը:

Ծրագրում պետք է ընդգծվի մեր ժողովրդի միասնության գաղափարը՝ իր երեք բաղադրիչներով՝ Հայաստան և Արցախ, ներքին սփյուռք, արտաքին սփյուռք: Այդ

միասնությունը մենք պետք է ընկալենք թե՛ ազգային-քաղաքական, թե՛ տնտեսական ու մշակութային ամբողջական առնչությունների մեջ: Մեր ժողովրդի զարգացման համազգային ծրագիրը պետք է մշակվի հենց այդ բաղադրիչների հոգևոր ու տնտեսական պոտենցիալի հաշվառումով: Խնդիրը ոչ թե կապի, այլ օրգանական միասնության մասին է: Մենք պետք է սերտորեն համագործակցենք, մասնավորապես, արտաքին սփյուռքի քաղաքական բոլոր կուսակցությունների ու հոսանքների հետ, գործնական և բանուկ դարձնենք Հայրենիք—Սփյուռք կամուրջը: Համահայկական այն համաժողովը, որ ծրագրվում է հրավիրել այս տարվա աշնանը, կարծում եմ, ըստ ամենայնի կքննարկի և կձևավորի համազգային այդ ծրագիրը:

Հայաստանի կոմկուսը իր ծրագրում պետք է միանշանակ արտահայտի իր կարծիքը երկրում ձևավորված ազգային-տարածքային կառուցվածքի վերաբերյալ, պաշտպանի Արցախի հայ բնակչության ազգային ինքնորոշման իրավունքը, հանդես գա պատմական ճշմարտության վերականգնման օգտին, քաղաքական ու իրավական գնահատական տա 1920-ական թվականներին հայ ժողովրդի թիկունքում կնքված անարդար որոշումներին ու պայմանագրերին: Միևնույն ժամանակ ժողովուրդների և ազգերի միջև գոյություն ունեցող պրոբլեմները պետք է լուծվեն միայն խաղաղ ճանապարհով, քաղաքական եղանակներով:

Հայաստանի կոմկուսը, դատապարտելով մարդկության հանդեպ գործադրած հանցագործությունները՝ ցեղասպանությունը, ջարդը, բռնագաղթը, պետք է ձգտի հայերի ցեղասպանության ճանաչմանը ինչպես ԽՍՀՄ-ի կողմից, այնպես էլ՝ միջազգային ընդգրկումով:

Մեր ծրագրում առանձին բաժին պետք է հատկացնել Հայաստանի կոմկուսի քաղաքականությանը մշակույթի, գիտության և կրթության բնագավառներում: Այս բաժնում հստակ վերաբերմունք պետք է մշակվի հայոց լեզվի պահպանման, զարգացման և համընդհանուր օգտագործման, ազատ, քաղաքականությամբ չպայմանավորված ստեղծագործության ծավալման, հայկական մշակութային և պատմաճարտարապետական հուշարձանների պահպանման ու վերականգնման հարցերին, ընդ որում՝ ինչպես հանրապետության տարածքում, այնպես էլ նրանից դուրս:

Հայաստանի կոմկուսը մեծ նշանակություն է տալիս հանրապետության տարածքում բնակվող ազգային փոքրամասնությունների մշակույթի, լեզվի, գրականության, արվեստի ազատ զարգացմանը, ազգային յուրօրինակության և ավանդույթների պահպանմանը, և դա պետք է արտացոլվի ծրագրում:

Հարկ է շեշտել դավանանքի ազատության սկզբունքը, կրոնի և հայ եկեղեցու պատմականորեն դրական դերը հայ ազգի բարոյական դաստիարակության և համախմբման գործում:

Նորից եմ ցանկանում ընդգծել, որ առաջին անգամ մշակվող ծրագիրը պետք է ներառի մեր ժողովրդին հուզող բոլոր սկզբունքային հարցերը, արտահայտի դրանց նկատմամբ հանրապետության կուսակցական կազմակերպության սկզբունքային դիրքորոշումը, բխի մեր ներկա վիճակի առանձնահատկություններից, ելնի հայ ժողովրդի ազգային շահերից ու ապագայի կողմնորոշիչներից:

Հաշվի առնելով մշակվող փաստաթղթի կարևորությունը, Կենտկոմի բյուրոն նպատակահարմար համարեց այս հարցը քննարկել պլենումում: Ընդ որում, այսօր անհրաժեշտ է ստեղծել նաև հատուկ հանձնաժողով՝ Հայաստանի կոմունիստական կուսակցության ծրագրի նախագիծը կազմելու համար: Այդ նախագիծը սկզբնական կուսակցական կազմակերպություններում և մամուլի էջերում քննարկվելուց հետո կներկայացվի Հայաստանի կոմկուսի XXIX համագումարին:

Ցանկալի կլիներ լսել ձեր նկատառումները ծրագրի նախագծի մշակման և հանձնաժողովի կազմի վերաբերյալ:

---

# ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXIX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՀՐԱՎԻՐՄԱՆ ԵՎ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ ՀԱՇՎԵՏՈՒ-ԸՆՏՐԱԿԱՆ ԿԱՄՊԱՆԻԱՅԻ ԱՆՑԿԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ

**1. Հայաստանի կոմունիստական կուսակցության XXIX համագումարը հրավիրել 1990 թվականի նոյեմբերի 22-ին, Երևանում:**

**2. Հայաստանի կոմկուսի XXIX համագումարի հաստատմանը ներկայացնել հետևյալ օրակարգը.**

**I. Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը:**

**II. Հայաստանի կոմկուսի վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը:**

**III. Հայաստանի կոմկուսի ծրագրի նախագծի մասին:**

**IV. Հայաստանի կոմկուսի ղեկավար մարմինների ընտրությունները:**

**3. Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյին հանձնարարել առաջարկություններ նախապատրաստել ներկայացուցչության նորմայի ու համագումարի պատգամավորների ընտրության կարգի մասին և դրանք ներկայացնել Կենտկոմի պլենումի քննարկմանը:**

**4. Կուսակցության սկզբնական կազմակերպություններին, շրջկոմներին ու քաղկոմներին իրավունք տալ որոշելու հաշվետու-ընտրական ժողովների ու կոնֆերանսների անցկացման ժամկետները՝ հաշվի առնելով տեղական պայմանները:**

# ՄՏՈՐՈՒՄՆԵՐ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՆԱԽՕՐՅԱԿԻՆ

**Օ. ԼՈԲՈՎ**

ԵԿԵԼ Է ԱՅՆ ԺԱՄԱՆԱԿԸ, ԵՐԲ ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ԿՈՄՈՒՆԻՍՏ պետք է իր համար տա հարցեր և պատասխանի դրանց. ու՞մ հետ ընթանալ այսուհետև, ինչու՞, ի՞նչ կարող ես ինքդ անել: Տեղի ունեցող իրադարձությունները լի են հակասություններով և ոչ միայն մեր հանրապետությունում. դրանք կապված են կենտրոնախույս և կենտրոնաձիգ ուժերի առկայության հետ, այն բանի հետ, որ ծառացել են բազմաթիվ պրոբլեմներ, որոնց մասին անցյալում լռել ենք, և որոնք հետևանք են մեր սխալների: Վերակառուցման անցած տարիները հասարակության զարգացումը հասցրել են այնպիսի մի շեմի, երբ յուրաքանչյուր մարդ պետք է ընտրություն կատարի, որոշի իր վերաբերմունքն ու տեղը ընթացող բարդ պրոցեսներում:

Լուծելով այդ հարցերը՝ մենք պետք է առաջին հերթին հաշվի առնենք մեր պատմական փորձը: Միևնույն ժամանակ անհրաժեշտ է ապրել այսօրվա օրով, նրա հոգսերով ու պրոբլեմներով, և, իհարկե, պետք է անպայման նայել առաջ, ապագային, աշխատել կանխասել վաղվա օրը: Հենց այն բանով, թե ինչ խորությամբ հաշվի կառնվեն այդ գործոնները, նրանց փոխադարձ կապը, պայմանավորված է մեր հասարակության բախտը, առաջադրված խնդիրների լուծման հնարավորությունը: Կարևոր է, որ տեսությունը առաջ անցնի պրակտիկայից, ամուր հենվի իրականության փաստական նյութի վրա, որքան էլ տագնապալի ու տխուր լինի այն:

Կարևոր է, որ մինչև XXVIII համագումարը յուրաքանչյուր կոմունիստ կարողանա որոշել իր դիրքորոշումը, բացահայտել իր հնարավորությունները, գտնել իր ուժերի կիրառումը: Խոսելով ինքնամաքրման անհրաժեշտության մասին՝ մենք ոչ մի չափով նկատի չունենք կուսակցական շարքերի հերթական «զտումը»: Խոսքը հենց ինքնամաքրման մասին է, այսինքն՝ կուսակցական կյանքի առողջացման բնական պրոցեսի մասին: Կոմունիստի ինքնամաքրման ընդունակության մասին դատել կարելի է սկզբունքային հարցերի, վերակառուցմամբ կուսակցության առաջադրած խնդիրների հանդեպ, բնակչության տարբեր խմբերի առաջ քաշած պահանջների նկատմամբ նրա ունեցած վերաբերմունքով:

Իմ կարծիքով, շատ կոմունիստների, այդ թվում և կուսակցական ղեկավարների մինչև այժմ պակասել է դիրքորոշման շիտակությունը: Դրա հետևանքով մի կողմից կորչում է նախաձեռնությունը, մյուս կողմից՝ ոգևորվում են նրանք, ովքեր գրոհում են կուսակցության դիրքերը: Պետք է հասկանալ, որ կոմունիստը չի կարող չեզոք դիրք գրավել. նա պարտավոր է կամ պաշտպանել առաջ քաշված պահանջը, կամ մերժել այն, քանի որ լռություն պահպանելը ընդդիմախոսի յուրատեսակ պաշտպանություն է: Այլ բան տրված չէ:

Հանրապետական կուսակցական կազմակերպությունը, որը անցել է վերջին երկու տարիների բարդ փորձություններով, որոնք կապված են եղել Լեռնային Ղարաբաղի պրոբլեմի, ազգամիջյան հարաբերությունների և ավերիչ երկրաշարժի հետ, Խորհրդային Միության կոմունիստական կուսակցության XXVIII համագումարը պետք է դիմավորի ամրապնդված: Հենց այդ հարցերն են, որ իրենց կնիքն են դրել վերջին երկու տարվա նրա գործունեության վրա:

---

*ԼՈԲՈՎ ՕԼԵԳ ԻՎԱՆՈՎԻՉ— Հայաստանի կոմկուսի Կենտկոմի երկրորդ քարտուղար:*



Մենք ինչի՞ց պետք է ելնենք մեր աշխատանքում: Գոյություն ունեն քաղաքական կյանքի ոչ թե տակտիկայի, այլ ստրատեգիայի հետ կապված գլոբալ հարցեր: Կարծում եմ եկել է ժամանակը, որ յուրաքանչյուր կոմունիստ հստակ որոշի իր դիրքը հանրապետության ստատուսի, նորացող Միության մեջ նրա տեղի հարցում: Ես այնպես եմ հասկանում, որ Հայաստանում բնակչության բացարձակ մեծամասնությունը վաղուց ու միանշանակ կատարել է իր պատմական ընտրությունը, այն կողմնորոշված է դեպի բարեկամությունը Ռուսաստանի հետ, դեպի քաղաքական և սոցիալ-տնտեսական բնույթի խնդիրների համատեղ լուծումը: Առավել ևս կարևոր է այժմ մոդայիկ բանավեճերի մեջ չմտնել անկախության, ինքնուրույնության, պետականության հարցերի շուրջը, որոնք տեղի են ունենում ուրիշ հանրապետություններում: Կարծում եմ, որ ուրիշ ռեգիոնների փորձի և նրանցում տեղի ունեցող իրադարձությունների ուսումնասիրումը, անկասկած, օգտակար գործ է: Սակայն ընդօրինակումը, կույր փոխառումը կարող են հանգեցնել այն բանին, որ մենք հետ կմնանք, և կամ, որ ավելի վատ է, կընկնենք սխալ դիրքորոշման մեջ, քանի որ երկու միատեսակ ժողովուրդներ չկան: Ես ելնում եմ այն բանից, որ հայ ժողովուրդը հեռանկարում ևս չի հրաժարվի իր ընտրությունից և, դրանից էլ ելնելով, կուսակցական կազմակերպությունը կկառուցի իր քաղաքականությունը:

Հանրապետական կուսակցական կազմակերպության գործունեության երկրորդ, ոչ պակաս կարևոր կողմն էլ հանրապետության իրական ինքնուրույնության բարձրացումն է: Այստեղ կարևոր է ճիշտ հասկանալ ինքնուրույնությունն ու նրա սահմանները, քանի որ կա մի գիծ, որից այն կողմ տեղի կունենան արդեն որակական փոփոխություններ:

Վերակառուցումը լայն ասպարեզ է բացել հանրապետության պոտենցիալ հնարավորությունների օգտագործման համար: Եվ հանցանք կլիներ չօգտվել դրանից: Բայց մենք չպետք է ծայրահեղությունների մեջ ընկնենք և ինքնուրույնությունը մեկնաբանենք այնպես, որ դա չըմբռնվի նրանց կողմից, ում հետ մենք մինչև հիմա աշխատել ու ապրել ենք: Դեպի ինքնուրույնություն հարկավոր է գնալ ոչ թե առանձնացման, այլ երկխոսության միջոցով, ինչը թույլ կտա դուրս գալ դեմոկրատիայի նոր մակարդակի, Միության՝ որպես ժողովուրդների ընկերակցության ամրապնդման նոր մակարդակի: Այդպիսի երկխոսության միջոցով, որը հնարավորություն կտա հանրապետության նկատմամբ վստահության հաստատուն երաշխիքներ ստանալ ինչպես կենտրոնից, այնպես էլ նրանցից, ովքեր մշտական կապեր են պահպանում նրա հետ: Իմ կարծիքով, արդի աշխարհում ցանկացած պետության ինքնուրույնության, սուվերենության աստիճանը կարելի է որոշել ուրիշ պետությունների հետ նրա բարեկամական կապերի զարգացման մակարդակով միայն:

Ինձ անհանգստացնում է այն հանգամանքը, որ Հայաստանի կոմունիստների ու բնակիչների որոշ մասը մի փոքր պարզունակ է պատկերացնում հանրապետության ինքնուրույնության, նրա պետականության հարցը՝ ինքնուրույնությունը մեկնաբանելով իբրև ինքնամեկուսացում, կապերի սահմանափակում արտաքին աշխարհի հետ և երկրի ներսում, ապավինելով գլխավորապես հայ սփյուռքի հետ ունեցած կապերին: Անհանգստացնում է նաև խորհրդային իշխանության տարիներին մասնավորապես Հայաստանի և ամբողջ Խորհրդային Միության ձեռք բերած նվաճումները նսեմացնելու երևան եկած միտումը, ինչը չի կարող հատկապես երիտասարդությանը չապակողմնորոշել տեղի ունեցող իրադարձությունները ճիշտ հասկանալու գործում:

Ուստի անհրաժեշտ է հստակորեն սահմանել կոմունիստների դիրքորոշումը: Այն ամենը, ինչ եղել է բացասական մեր կուսակցության, առաջին անգամ նոր սոցիալիստական պետություն կառուցող պետության պատմության մեջ, այն ամենը, ինչ իրեն չի արդարացրել, պետք է դեն շպրտվի: Անհրաժեշտ է մշակել այնպիսի մեխանիզմներ, որոնք արգելակեն նման երևույթների առաջացումը:

Բայց այն ամենը, ինչ հնարավորություն է տվել տոկալ և՛ ինտերվենցիայի դեմ, և՛ ֆաշիզմի դեմ, և՛ սովի ու քայքայման դեմ, այն ամենը, ինչ հնարավորություն է տվել, որ մենք աշխարհում ձեռք բերենք այն կշիռը, որ ունենք որպես արդի աշխարհի առաջատար պետություններից մեկը, մենք մեզ հետ պետք է տանենք դեպի ապագա: Որպեսզի չզրկվենք մեր նվաճումներից, պետք է սկզբունքային լինենք գլխավոր հարցերի լուծման գործում. վերաբերմունքը ֆաշիզմին և տոտալիտարիզմին, խաղաղությանը և պատերազմին, քանի որ այդ ընտրությամբ են պայմանավորված մարդու բուն գոյությունը հողագնդի վրա, քաղաքակրթության բախտը:

Ուստի, խոսելով ինքնուրույնության մասին, պետք է հիշենք մեր պետության

Այս կապակցությամբ չի կարելի չասել հանրապետության Գերագույն խորհրդի և տեղական խորհուրդների նոր կազմի ձևավորման մասին, այդ պրոցեսների նկատմամբ կուսակցության ունեցած վերաբերմունքի մասին: Ամեն ինչից դատելով, պառլամենտում բանվորներ և գյուղացիներ գրեթե չեն լինի: Մոսկվայում և Լենինգրադում կայացած ընտրությունները ակնառու օրինակ ցույց տվեցին, երբ նախընտրական պայքարի ոգևորության մեջ մոռացության են տրվում իշխանության կառուցվածքի հիմնարար սկզբունքները: Խոսքն այն մասին է, որ ներկա իրադրության մեջ հազիվ թե կարելի լինի հույս դնել բնակչության բոլոր խավերի համամասնական ներկայացուցչության վրա: Հետևաբար, մենք, որպես առաջավոր կուսակցություն, պետք է մտածենք բանվորների, գյուղացիների, երիտասարդության, կանանց իրավունքների պաշտպանության համակարգ ստեղծելու մասին: Բնակչության տարբեր խավերի օտարացումը պետության և հասարակության կառավարման գոյություն ունեցող ձևերից կարող է բացասական հետևանքներ ունենալ կուսակցության համար: Պատահական չէ, որ նոր մարքսիստական բանվորական կուսակցության՝ պրոլետարիատի դիկտատուրայի կուսակցության, պլատֆորմում նշված է, որ բանվոր դասակարգը փաստորեն հեռու է մնացել իշխանությունից: Իհարկե, դա ոչ բոլորովին է այդպես, բանվոր դասակարգը միանգամայն բավարար չափով ներկայացված է կառավարող կուսակցության մեջ, իսկ նրա ներկայացուցիչների միջոցով էլ՝ իշխանության մարմիններում: Բայց օրենսդրական գործունեության հարցերում, իրոք, բանվորների դերը հանգեցվում է ձևական դիտորդության դերի: Բանն այն չէ, որ արհեստականորեն համապատասխան թվային համամասնություններ ստեղծենք, այլ այն, որ մշակենք լայն զանգվածների համար իրենց կամքը արտահայտելու և որոշումներ ընդունելու, նրանց սոցիալական ակտիվ գործունեության մեջ ներգրավելու նոր, դեմոկրատական ձևեր: Դրանք կլինեն հանրաքվեների, համաժողովրդական քննարկումների կիրառումը հասարակական կյանքում և այլն:

Ընդամենը երկու-երեք տարի առաջ չէր կարելի շատ բան պատկերացնել այն ամենից, ինչ այսօր սովորական է դարձել մեզ համար: Կուսակցությունը վերակառուցման թափ է առնում և դա չի կարելի չնկատել: Նրա հաջողության համար մեզ բոլորիս օդի նման անհրաժեշտ են զսպվածություն, վստահություն մեր ուժերի հանդեպ, հավատ մեր բանականության, վերակառուցման նկատմամբ, հավատ մյուս ժողովուրդների հետ եղբայրության անխախտության նկատմամբ: Եվ հավատացած եմ, որ մենք ձեզ հետ կլինենք Հայաստանի, մեր ողջ երկրի իսկական վերածննդի ոչ միայն վկաներ:

---

**Հեղինակի խնդրանքով հոդվածի հոնորարը փոխանցվում է երկրաշարժից տուժածների օգնության փոնդ:**

# ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐՆ ԱՌԱՋԱՐԿՈՒՄ ԵՆ

**Ա. ՇԱՀՈՒՄՅԱՆ**

(ՀՈԴՎԱԾԸ ԿԱԶՄՎԵԼ Է «ՀԱՅԷԼԵԿՏՐԱՇԱՐԺԻՉ» ԳԱՄ–Ի ԿՈՒՍԿՈՄԻՏԵՈՒՄ ԿԱԶՄԱԿԵՐՊՎԱԾ «ԿԼՈՐ ՍԵՂԱՆԻ» ՆՅՈՒԹԵՐԻ ՀԻՄԱՆ ՎՐԱ)

## ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԻ ՇԱՐՔ ՀԱՐՑԵՐ

*Ձեռնամուխ լինելով ՀՄԿԿ-ի նորացման ծրագրին՝ առաջին հերթին հարկավոր է ճշգրտել, թե ինչի՞ ենք հասել հասարակության վերակառուցման հինգ տարվա ընթացքում, ինչի՞ ենք ձգտում, ինչպիսի՞ մեթոդներով ենք առաջ ընթանում դեպի առաջադրված նպատակը:*

*Իրականում կարելի է համաձայնել ՀՄԿԿ XXVIII համագումարի առթիվ Կենտկոմի պլատֆորմի նախագծի այն գնահատականին, թե անցումային շրջանի գլխավոր արդյունքը հասարակության հոգևոր և քաղաքական ազատագրումն է, թե ազատության մթնոլորտում մարդիկ ձեռք են բերել քաղաքացիական և ազգային արժանապատվություն, իրենց ձեռքն են վերցրել պետության գործերը: Սակայն, խոսելով հինգ ռեֆորմների իրականացման ընթացքում կատարած սխալների ու վրիպումների մասին, այսօր հարկավոր է ազնվորեն ու ճիշտ ասել, թե որոնք են դրանց էությունը և ինչպես դուրս գալ այն խոր ճգնաժամից, որում գտնվում են հասարակությունը և կուսակցությունը: Սկսելով վերակառուցումը՝ կուսակցության ղեկավարությունը, ըստ էության, պետք է, համաշխարհային համագործակցության զարգացման պատմական նոր պայմանների հաշվառմամբ, վերաիմաստավորի հին պատկերացումներն ու գաղափարախոսական դիրքորոշումը: Մեր մտածողության մեջ ստերեոտիպերն այնպես խոր ու հիմնավոր են արմատավորվել, որ մինչև այժմ պետական և քաղաքական սիստեմում վերափոխումներ անցկացնելու փորձը հարուցում է հին գործելակերպին կառչած մարդկանց հակազդեցությունը:*

*Հնարավոր չէ մշակել կուսակցության հետագա ծրագիր առանց ձերբազատվելու հին մտածողությունից, կրկնելու հին դոգմաները՝ դրանք ներկայացնելով որպես հավատարմություն մարքսիզմին: Մինչ այժմ շատ վայ քաղաքագետներ յուրաքանչյուր հարմար պահի վկայակոչում են Լենինին և, քմահաճորեն մեջբերելով նրա ասույթները, դրանք ներկայացնում իբրև իրենց փաստարկների անժխտելիության հիմք: Նրանք մոռանում են, որ ինքը՝ Վլադիմիր Իլյիչը, ժամանակի կարճ հատվածի ընթացքում վերանայել է իր իսկ առաջադրած տեսական շատ դրույթներ, իսկ վերջին նամակներում լուրջ մտահոգություն էր արտահայտում կուսակցության մեջ և երկրում տիրող իրավիճակի կապակցությամբ:*

*Մինչև օրս անառարկելի են համարվում վերադասի բոլոր որոշումները: Առանձին որոշումներ էլ սկզբում ընդունվում էին որպես անհրաժեշտություն, իսկ հետո, կարճ ժամանակ անց, համարվում սխալ, տեղը զիջում նոր «մտածված որոշմանը»: Նման իրավիճակում մարդիկ անկարող են ընկալել ստերեոտիպ դարձած նոր վավերագրերը: Մեր կյանքում դեռևս չհաղթահարված սոցիալական անպաշտպանվածությունը ծնել է բյուրոկրատների մի համակարգ, որը ճարպկորեն օգտագործում է իր ծառայողական դիրքը՝ սեփական պահանջմունքները բավարարելու և հասարակական դիրքը պահպանելու համար: Բյուրոկրատիան սոցիալական չարիք է, քանզի այն ստեղծում է փոքրամասնության համար արտոնությունների շղթա, որը նրանց հեռու է պահում ժողովրդից: Բյուրոկրատը լավ գիտի, որ իր դիրքն ու կշիռը պայմանավորված են իր զբաղեցրած տեղով և եթե այն կորցնի, ապա կզրկվի ամեն ինչից: Վարչահրամայական համակարգի պայմաններում մարդը հետզհետե վերածվում էր ռոբոտի՝ կորցնելով ինքնատիպության դիմագիծը: Նա հաճախ կարող է հնարամտություն դրսևորել միայն քծնանքով: Պաշտոնական անձանց փոխկապվածությունը ծնում է պաշտոնատենչություն*

---

*ՇԱՀՈՒՄՅԱՆ ԱՐՄԵՆ ՖԼԱՄԱՐԻՈՆԻ— «Հայէլեկտրաշարժիչ» արտադրական միավորման կուսկոմիտեի քարտուղար:*

մտահոգություններին։ Ստորև ներկայացնում եմ նրանցից մի քանիսի կարծիքը.

**Ա. ՄԻՐԶՈՅԱՆ.— 15-րդ արտադրամասի հավաքող-փականագործ, միավորման աշխատավորական կոլեկտիվի խորհրդի նախագահ։**

— Պայքարելով երկրի տնտեսական իրավիճակը կայունացնելու համար՝ ԽՄԿԿ Կենտկոմի պլատֆորմի նախագիծը վավերացնում է. «Անհրաժեշտ է, որ ձեռնարկվող միջոցառումները կրեն հստակորեն արտահայտված սոցիալական ուղղվածություն, բարելավվեն երկրի տնտեսական դրությունը և, առաջին հերթին, բնակչության ցածր վարձատրվող խավի կեցությունը»։

Կյանքի կոչելով այդ դրույթը՝ միաժամանակ չպետք է մոռանալ կոմունիստների անձնական պատասխանատվության մասին։ Շատ ամոթալի է, որ, երբ պետությունը սոցիալական անհրաժեշտ կարիքները մեծ դժվարությամբ է բավարարում, կուսակցական և տնտեսական առանձին ղեկավարներ երբեմն անխոհեմ կերպով ոչ անհրաժեշտ օբյեկտների, գործարքների համար վատնում են միլիոններից անցնող ժողովրդական միջոցներ և ոչ մի պատասխանատվություն չեն կրում կատարածի համար։ Գործն ավարտվում է թեթև կշտամբանքով, եզակի դեպքում՝ կուսակցական նկատողությամբ։

Առաջարկում եմ նման դեպքերում, ղեկավար այն ցուցումների համար, որոնք հանգեցնում են ժողովրդական միջոցների անտեղի վատնման ու փոշիացման, մեղավորներին անհապաղ ենթարկել դատական պատասխանատվության։

**Վ. ՄԿՐՏՉՅԱՆ.— 17-րդ արտադրամասի գալվանապատող, կուսբյուրոյի քարտուղար։**

— Դեռևս մինչև ԽՄԿԿ նոր կանոնադրության նախագծի հրապարակումը մարդկանց հետաքրքրում էր, թե նրանում ի՞նչ նոր սկզբունքներ են առաջ քաշվելու։ Անկեղծ ասած, այսօր, քննարկելով այդ կարևոր փաստաթուղթը, հեշտ չէ խոսել կոմունիստ ընկերների հետ։ Տեսնելով առաջադիմական փոփոխությունները, հատկապես սկզբնական կուսկազմակերպությունների դերի բարձրացման մասում, կոմունիստներն ամենևին էլ գոհ չեն նախագծի մի շարք դրույթներից։ Այսպես, ներածականը մի տեսակ տարտամ է, աններդաշնակ, ոչ հստակ։ Պարզորոշ բան չի ասվում մեր նպատակների մասին։ Ինչո՞ւ, օրինակ, նախագծում տեղ չի հատկացված «կոմունիզմ» բառին։ Ի՞նչ է, ԽՄԿԿ-ն հրաժարվո՞ւմ է իր իդեալից, ինչո՞ւ այսպես հանկարծ վերածվում ենք հասարակական-քաղաքական կազմակերպության։ Ուրեմն ի՞նչ. մենք նմանվում ենք կանանց խորհրդի՞ կամ բնապահպան ընկերությա՞ն։

Կանոնադրության նախագիծը, իմ կարծիքով, բովանդակում է ոչ քիչ թերացումներ։ Այսպիսի կարևոր փաստաթղթում դա անթույլատրելի է։ Թվում է, որ կոմունիստները, որոնք, իրոք, անտարբեր չեն ԽՄԿԿ-ի ճակատագրի հանդեպ, քննարկման ժամանակ այն կհարստացնեն կուսակցության ընդերքում ծնվող պահանջներից բխող լրացումներով։

**Ս. ԽԱՉԱՏՐՅԱՆ.— 9-րդ արտադրամասի կուսբյուրոյի քարտուղար։**

— ԽՄԿԿ Կենտկոմի 1990 թվականի փետրվարյան պլենումում հավանության արժանացած կուսակցության XXVIII համագումարի առթիվ Կենտկոմի պլատֆորմի նախագծում այսպիսի մի միտք է արտահայտված. «Կուսակցությունը իր գլխավոր նպատակը տեսնում է այն բանում, որ մարդուն իսկապես դնի հասարակական զարգացման կենտրոնում, նրա համար ապահովի ապրելու և աշխատելու արժանավայել պայմաններ, սոցիալական-արդարություն, քաղաքական ազատություն, անհատի համակողմանի զարգացման և հոգևոր ծաղկման հնարավորություններ։ Հենց դրանով էլ պետք է որոշվի հասարակության առաջադիմությունը»։ Խորիմաստ բառեր են, այդպես չէ՞։ Բայց մենք, արդյոք, հիմք ունե՞նք հավատալու դրանց ճշմարտությանը։ Դժվար թե։

Սկզբից եվեթ հավատալով վերակառուցման հռչակած սկզբունքների՞ն՝ մի պահ մեզ թվաց, թե եկել է այն պահը, երբ վերջապես հնարավորություն կունենանք ուղղելու պատմական այն անարդարությունը, որ այս յոթանասուն տարում ուղեկցել է հայ ժողովրդի մի փոքրիկ հատվածին՝ Արցախի մեր հայրենակիցներին, որին արդեն իսկ սպառնում է արժանանալու Նախիջևանի բախտին։ Զորավիգ լինելով կուսակցության որդեգրած դեմոկրատական սկզբունքին՝ մեզանից յուրաքանչյուրը համոզված էր, որ մայր ժողովրդի հետ վերամիավորվելու արցախահայության ցանկությունը կիրականացվի վերակառուցման շրջանակներում և ազգերի ինքնորոշման իրավունքի հիման վրա։

Ցավոք, այս երկու տարվա անցուդարձը ցույց տվեց, որ այնքա՜ն երազած վերակառուցումը չի ծառայում իր նպատակին։ Ավելին, մեր արդար ու օրինական պայքարի դիմաց ստացանք Սումգայիթ ու Կիրովաբադ, Խոջալու և Բաքու էլ ինչպե՞ս հավատանք և ու՞մ հավատանք, երբ ոչ ոք պատասխանատվություն չի կրում հարյուրավոր անմեղ հայերի՝ անպաշտպան ծերերի, մանուկների ու կանանց սպանությունների, խայտառակ շրջափակման համար։ Ավելին, հետևություն անելով ԽՄԿԿ Կենտկոմի պլենումում Լեռնային Ղարաբաղի հարցի մասին արտահայտված մտքից, մեկ անգամ ևս համոզվում ես, որ ոչ միայն միտում չկա լուծելու այդ հարցը, այլև, ընդհակառակը, կարծես դիտավորյալ այն տարվում է փակուղի։ Իսկ դա նշանակում է կրկին ոտնահարել մի ողջ ժողովրդի իրավունքները։ Ուրեմն պլատֆորմում պետք է հստակորեն խոսվի ոչ միայն ազգերի, այլև ազգային կազմավորումների ինքնորոշման իրավունքի և այն մասին, թե նրանք ում հետ են ուզում ապրել։



**Ժ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ.— 27-րդ արտադրամասի գրաշար։**

— Հասունացել է ժամանակը, որ կուսակցությունը լիովին փոխի իր աշխատանքի ոճը, փնտրի ու գտնի դեպի ժողովուրդը տանող ճշմարիտ ուղիներ։ Եվ ահա այս տեսակետից կարծես հույս է ներշնչում XXVIII համագումարի առթիվ ԽՄԿԿ Կենտկոմի պլատֆորմի նախագիծը։ Ի վերջո, կուսակցությունը ուժ է գտնում բացեիբաց խոսելու իր սխալների մասին և խոստանում ուղղել դրանք ի նպաստ վերակառուցման։

Պլատֆորմում տեղ է գտել նաև ազգային հարցը։ Այո՛, մեր երկրի համար ցավոտ այս խնդրի լուծմամբ է պայմանավորված նաև մեր վաղվա օրը։ Կյանքը ցույց է տվել, որ այս լուրջ ու նուրբ հարցում յուրաքանչյուր անհեռատես քայլ ճակատագրական է ողջ խորհրդային հասարակարգի համար։ Ելնելով պլատֆորմում արտահայտված «... ազատ ինքնորոշում ազգերին» մտքից, ուզում ես հավատալ, որ այս անգամ էլ նախորդ որոշումների ու բանաձևերի նման սա էլ չի մնա թղթի վրա։ Ի՞նչ խոսք, ժամանակը և կյանքը ցույց կտան, թե կուսակցությունն իր գործելակերպով հավատարիմ կմնա՞ իր կոչմանը։ Մի բան պարզ է՝ նա ուրիշ ճանապարհ չունի, քան պաշտպանել ժողովրդի շահերը, լինել նրա կողքին։ Հետևաբար, հարկավոր է պլատֆորմում հստակորեն նշվի այդ խնդրի մասին։

**Հ. ՍԱԼԱԽՅԱՆ.— Գործիքաշինական արտադրամասի գործիքագործ-փականագործ, ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատ։**

— Հետաքրքրությամբ կարդացի ԽՄԿԿ կանոնադրության նախագիծը։ Ամբողջությամբ վերցրած խոր մտածված, կշռադատված փաստաթուղթ է։ Իհարկե, առաջիկայում հարկ կլինի այն ավելի հանգամանորեն ուսումնասիրել։

Իսկ առայժմ իմ առաջին տպավորության մասին. «ԽՄԿԿ-ի անդամությունը» բաժնում կա այսպիսի ֆրազ. «ԽՄԿԿ անդամ կարող է լինել ԽՍՀՄ ամեն մի քաղաքացի...»։ Կարծում եմ, որ «ամեն մի» բառարտահայտությունը այստեղ ավելորդ է և բովանդակում է երկիմաստություն։ Հարկ է հրաժարվել ևս մեկ անհաջող բառարտահայտությունից։ Դա չորրորդ բաժնի առաջին կետն է, որտեղ ասվում է. «Խորհրդային Միության կոմունիստական կուսակցության գերագույն մարմինը...»։ Կուսակցության դեմոկրատացման հետ «գերագույն» բառը մի տեսակ համահունչ չէ։ Ավելի ճիշտ կլիներ օգտագործել «բարձրագույն» բառը։

Նորից անդրադառնանք առաջին բաժնին։ Խոսքը վերաբերում է չորրորդ կետի վերջին պարբերությանը։ Լավ է, իհարկե, որ «ԽՄԿԿ-ի վետերան» պատվավոր կոչմանը արժանանալու կուսակցական ստաժը նվազեցվել է մինչև 40 տարի։ Գտնում եմ, որ դա էլ է շատ։ Ախր, ԽՄԿԿ շարքերն ընդունվում են հիմնականում հասուն հասակում, երեսունի սահմաններում։ Այս պատճառով շատերը չեն ապրում մինչև այն տարիները, երբ տրվում է պատվավոր կոչումը։ Նույն բաժնի հինգերորդ կետի չորրորդ պարբերության մասին։ Կարծում եմ, որ, եթե կոմունիստը չի ցանկանում մնալ կուսակցության շարքերում և դիմում է ներկայացրել այդ մասին, ապա չպետք է խոչընդոտել ու պարտադիր չէ, որ հարցի լուծման համար ապահովվի պլենումի անդամների կամ նիստի մասնակիցների քվեների ավելի քան կեսի կամ երկու երրորդի մասնակցությունը։ Չէ՞ որ կստացվի այնպես, որ, հակառակ մարդու ցանկության, ստիպողաբար նրան պահում ենք կուսակցության մեջ։

Երկու խոսք կուսակցական անդամավճարի մասին։ Նպատակահարմար եմ համարում կուսակցության բոլոր անդամների համար սահմանել ամենամսյա անդամավճարի միասնական չափ, այսինքն՝ բոլորի համար լինի մի կոնկրետ տոկոս՝ անկախ եկամտի ու աշխատավարձի մակարդակից։

**Վ. ԱԼԱՎԵՐԴՅԱՆ**
**«Հայէլեկտրամեքենա» ԳԱՄ-ի կուսկոմիտեի քաղլուսկաբինետի վարիչ**

# ՀԱՎԱՏ Է ՊԵՏՔ...

ԱՇԽԱՐՀԸ ՆՈՐԱՑՄԱՆ ՓՈՒԼ Է ՄՏԵԼ: Կյանքի բոլոր բնագավառներում զարմանալի աշխուժություն ու զարթոնք կա: Մեր երկրում վերջին տարիներին հռչակված դեմոկրատիան ու հրապարակայնությունը կյանքի են կոչվել, ձգտում են չմնալ թղթի վրա: Եվ այս մեծ փոփոխության շունչը արձագանքվում է ողջ մոլորակում:

Վերակառուցումը շատ փակ դռներ բացեց, շատ փակ սահմաններ: Սակայն որքան էլ զգալի լինի այդ շարժումը, այնուամենայնիվ, ճիշտ և արդյունավետ ընթացքի համար պետք է անդրադառնալ այն արմատական հարցերին, առանց որոնց փոփոխման հնարավոր չէ լիարժեք քայլ կատարել:

Այդ մտահոգությունը կար նաև Հրազդանի շրջկոմի վերջերս տեղի ունեցած պլենումում: Եվ շրջկոմը նախօրոք դիմել էր շրջանի ողջ աշխատավորությանը, ակնկալելով նաև նրանց օգնությունը, մշակել միջոցառումների ընդարձակ ծրագիր, կազմակերպել երկխոսություններ, որոնցում բարձրացված հարցերի լուծման միջոցով հնարավոր կլինի նպաստել կուսակցական աշխատանքի կատարելագործմանը: Այդ գործընթացն առավել ակտիվացավ ԽՄԿԿ XXVIII համագումարի առթիվ Կենտկոմի պլատֆորմի և ԽՄԿԿ կանոնադրության նախագծերի հրապարակումից հետո և դրանց քննարկումների ընթացքում: Այդ առնչությամբ էլ զրույց կայացավ կուսշրջկոմի հրահանգիչ Ռ. Հայրապետյանի և ՀԼԿԵՄ շրջկոմի առաջին քարտուղար Ա. Մարտիրոսյանի հետ: Ստորև ներկայացվում է նրանց կարծիքը:

Ռ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ.— Կուսակցական աշխատանքի կատարելագործման նոր ուղիների որոնումը կօգնի մնալու մարտական դիրքերում և կատարելու գործնական քայլեր: Եթե իրականում չապացուցենք նոր ուղիների արդյունավետությունը, նշանակում է ընկնել նոր մոլորությունների մեջ: Կատարելագործել կուսակցական աշխատանքը. այսօր դա է գլխավոր խնդիրը: Այս պահանջն է բովանդակում ԽՄԿԿ Կենտկոմի պլատֆորմի նախագիծը:

Մարդու գնահատականը տալիս են ոչ թե նրա խոսքերի, այլ գործերի համեմատ, առավել ևս՝ ղեկավար մարդու, իսկ որքա՞ն է կարևորվում սա ղեկավար մարմնի, կուսակցության համար: Ահա հենց այստեղից պետք է սկսեն իրենց հեղինակության բարձրացումը կուսակցության նվազագույն բջջից մինչև ամենավերջին օղակները: Կոմունիստական կուսակցության դիրքերի և գոյության պահպանումը պայմանավորված են հենց իր գործնական քայլերով և ժողովրդի կամքը հաշվի առնելու նրա պատրաստակամությամբ: Դա հատկապես կարևոր է այս օրերին, երբ ծնվում են նորանոր կազմակերպություններ...

Շրջանի կուսկազմակերպությունը, հստակորեն գնահատելով ստեղծված իրավիճակը, ուղիներ է որոնում հաղթահարելու հոգեբանական և այլ բնույթի արգելքներ: Խոսքը թղթի վրա չթողնել, հնչող յուրաքանչյուր խոսք կյանքի կոչել,— սա է այսօր մեր կարգախոսը: Այդ իսկ նկատառումներով բնակչության սոցիալ-կենցաղային ամենացավոտ հարցերը լուծելու գործնական ծրագրեր են մշակվել՝ կոնկրետ հանձնարարականներով, պատասխանատու անձանցով և ժամկետներով: Ծրագրերում նախատեսված են և՛ բնակչության հրատապ պահանջների, և՛ հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստների, անկուսակցականների, ինչպես նաև՝ կոլեկտիվներում շրջկոմի ներկայացուցիչների հետ հանդիպման ժամանակ աշխատավորների քննադատական դիտողությունների ու առաջարկությունների իրականացման հնարավորությունները:

Ստացվում է համալիր ծրագիր, որն արդեն սկսել է գործնական ուղի մտնել: Պատասխանատու անձինք, իրոք, պատասխանատվություն կկրեն թերանալու կամ զլանալու դեպքում, ընդհուպ մինչև տվյալ պաշտոնից ազատումը: Ահա այստեղ էլ կանչվե՛նք՝ կադրերի արժանավորության խնդրին, որն առանցքային է և բոլոր հաջողությունների որոշիչը: Կադրերի հետ լուրջ աշխատանք է պետք, ռեզերվային կադրերի երաշխավորված հաշվառում:

Մեծ նշանակություն ձեռք կբերի կուսքարտուղարի անձնական հատկանիշները հաշվի առնելը, նրա կապվածությունը ժողովրդի հետ, միաժամանակ՝ նրա սոցիալական պաշտպանվածությունը:

Թվարկած և բազմաթիվ այլ հարցերի լուծումը, համոզված եմ, հող կստեղծի կուսակցության նկատմամբ հավատի վերածննդի, հետևաբար, նաև վերակառուցման աներկբա առաջընթացի համար՝ և՛ ամեն մի ներքին օղակում, և՛ առհասարակ ողջ երկրում:

Ա. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ.— Հաջողության հասնելու միակ ուղին ճշմարտությանը բաց աչքերով նայելն է: Յոթանասուն տարի շարունակ խորհրդային ժողովուրդը մի բան է հաստատապես տեսել. առաջին դեմքը ամեն մի արտոնությամբ օժտված միակ ղեկավարն է, որի խոսքն անառարկելի է: Արդյունքում՝ միակաղապարայնություն, միօրինակություն, ինքնուրույնության անտեսում, և որպես հետևանք՝ բազմաթիվ հիասթափեցնող այլ երևույթներ:

Դրա օրինակը մեր շրջանի աշխատավորները շատ են տեսել: Յուրաքանչյուր գնացած կամ հեռացված քարտուղարից հետո նոր միայն, հաճախ կուլիսների հետևում, իմացվել է նրա մերժելի արարքների ու վարքագծի մասին: Սա նշանակում է, որ մեղքը պետք է որոնենք ոչ թե անհատների մեջ, այլ մեխանիզմի (չէ՞ որ քննադատող նոր ղեկավարը ցանկանում է նախորդի վիճակը չկրկնել, սակայն, երևում է՝ հնարավոր չէ):

Պետք է փոխել մեխանիզմը: Կարծում եմ դա այնքան էլ բարդ չէ: Եթե շրջկոմի բյուրոյի ու ապարատի ընկերներն իմանան, որ ամեն մի սխալի համար պատասխան կտա ոչ միայն առաջին քարտուղարը, այլ իրենք պիտի բոլոր հարցերին վերաբերվեն խորին պատասխանատվության զգացմամբ, ուզեն էլ, կրավորական դիրք չեն գրավի: Առաջին քարտուղարի ամեն մի ասածը հալած յուղի տեղ չեն ընդունի, նրա մերժելի արարքներն իրենց լռությամբ չեն խրախուսի:

Եթե գործի այս մեխանիզմը, այսինքն՝ առաջին քարտուղարը պատասխանատվության կանչվի կամ նրա հեռացման դեպքում՝ հեռացվի շրջկոմի ողջ կազմը, ապա վերջինս այլևս չի վախենա, թե դեմոկրատական սկզբունքները, դիտողությունն ու քննադատությունը կընդունվեն որպես անձի դեմ ուղղված վիրավորանք: Հարմարվողականությունը կնվազի, կակտիվանա մտքերի բախումը, որից կշահի միայն գործը, կբարձրանա բոլորի պատասխանատվությունը:

Այո՛, փաստացի գործ է պետք: Հարկ է ուշադրությունը կենտրոնացնել կադրերի ճիշտ ընտրության վրա: Այնինչ մեր օրերին բնորոշ է, որ աշխատանքային մի ճակատում ձախողված կադրը երբեմն կարող է մի ուրիշ տեղ ղեկավար ընտրվելու հնարավորություն ստանալ:

Մեր լավատեսությունն իրական կլինի, երբ կուսակցության ներքին կյանքը, կառուցվածքը վերափոխվեն և համապատասխանեն նորօրյա պահանջներին: Երիտասարդությունն ամենից շատ է շահագրգռված կուսակցության հեղինակության բարձրացման և վերակառուցման հաջող ընթացքի համար: Այս առնչությամբ անհրաժեշտ են գործնական քայլեր: Ահա և կուզեի այդ ամենը իր արտացոլումը գտներ Կենտկոմի պլատֆորմի և կուսակցության կանոնադրության նախագծերում:

Իհարկե, պատրաստի դեղատոմս բոլոր ցավերի համար չկա, կփրկի միայն կոնկրետ աշխատանքը: Այժմ ամենից շատ կուսակցության նկատմամբ վստահություն և հավատ է պետք:

ԱՆԱՀԻՏ ԳԵՎՈՐԳՅԱՆ
*ԽՍՀՄ ժուռնալիստների միության անդամ*

# ԱՄՐԱՊՆԴԵԼ ՍԿԶԲՆԱԿԱՆ ՕՂԱԿԸ

ՔԱՂԱՔԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԻ ՌԵՖՈՐՄԸ, հասարակության նորացումը այսօր աներևակայելի են առանց կուսակցության նորացման: Մարդիկ, անշուշտ, հսկայական նշանակություն են տալիս ԽՄԿԿ դերին՝ հասկանալով, որ վերակառուցման հաջողությունը, խորհրդային մարդկանց կյանքի բարելավումը վճռականորեն պայմանավորված են կուսակցության վարած ճիշտ քաղաքականությամբ և պրակտիկ խելամիտ գործունեությամբ: Մինչդեռ կուսակցությունը ինքը, լինելով վերակառուցման նախաձեռնողը, աններելի դանդաղկոտություն ցուցաբերեց իր ներքին վերակառուցման գործում: Այդ մասին վկայում է նաև ընկ. Մ. Գորբաչովը. «Կուսակցության մեջ վերակառուցումը էապես հետ է մնում հասարակության մեջ տեղի ունեցող պրոցեսներից»: Այս առումով գտնում եմ, որ ԽՄԿԿ XXVIII համագումարի առթիվ Կենտկոմի պլատֆորմի նախագծում ներկայացված կուսակցության մեջ դեմոկրատական փոփոխությունների վերաբերյալ հավաստիացումները ուշացած են:

Կուսակցության նորացման հիմնաքարն այժմ այն է, որ նա իր դերը տեսնում է դեմոկրատաբար ճանաչված քաղաքական լիդեր լինելու մեջ՝ չհավակնելով առավելության և իր առանձնահատուկ դիրքի ամրապնդմանը ԽՍՀՄ սահմանադրության մեջ: Եվ կուսակցությունը նախաձեռնություն է հանդես բերում հիմնական օրենքի 6-րդ կետի փոփոխման գործում: Սակայն, եթե վերհիշենք ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների համագումարում ծավալված այս հարցի (6-րդ կետի) սուր քննարկումը և հաշվի առնենք երկրում ստեղծված չափազանց լարված իրավիճակը, որը առաջացնում է կուսակցության վերաբերյալ, մեղմ ասած, անբարենպաստ վերաբերմունք, ապա տպավորություն է ստեղծվում, որ այս «կամավոր» քայլը կուսակցության Կենտկոմը ստիպված արեց: Այլ տպավորություն կստեղծվեր, եթե դա արվեր ժամանակին, գոնե ժողովրդական դեպուտատների համագումարից առաջ: Այն ժամանակ նման քայլը բոլորը կընդունեին որպես կամավոր նախաձեռնություն և զգալիորեն կնպաստեր կուսակցության հեղինակության բարձրացմանը:

Իմ կարծիքով ներկայացված պլատֆորմի նախագիծը, պարունակելով առաջադիմական մըտքեր, միևնույն ժամանակ հիմնականում կազմված է հին ոճով. շատ են ոչ կոնկրետ, լոզունգային արտահայտությունները, այն տեղ-տեղ կրում է դեկորատիվ բնույթ, հատկապես առաջին մասերում:

Հայ ժողովրդին անչափ հուզող՝ «Դեպի նոր ֆեդերացիա» 5-րդ մասում հստակորեն չեն ներկայացված կուսակցության ազգային քաղաքականությունը, ինքնավար կազմավորումների զարգացման ուղիները, ազգերի ինքնորոշման իրավունքի ապահովման երաշխիքները: Այստեղ ասվում է, որ Կենտրոնական կոմիտեն ազգերի և ազգամիջյան հարաբերությունների զարգացման հարցի նկատմամբ իր մոտեցումը շարադրել է «Կուսակցության ազգային քաղաքականությունը արդի պայմաններում» պլատֆորմի մեջ: ԽՄԿԿ XXVIII համագումարի առթիվ Կենտկոմի պլատֆորմի նախագծում, իմ կարծիքով, պետք է հաշվի առնվեր, որ այդ պլատֆորմի քննարկումից և ընդունումից հետո ազգամիջյան հարաբերությունները մեր երկրում ոչ թե նորմալացան, այլ մտան լարվածության նոր փուլ: Ըստ էության, դա վկայում է, որ ազգային հարցի վերաբերյալ ԽՄԿԿ Կենտկոմի պլատֆորմը չընդունվեց մասսաների կողմից: Եվ հաշվի առնելով ազգային փոխհարաբերություններում տիրող գերլարված իրավիճակը՝ կուսակցությունը պետք է ներկայացներ ավելի ծանրակշիռ, հստակ և կենսունակ ծրագիր:

Հիմնականում հավանության է արժանի, որոշ վերապահումներով, պլատֆորմի 7-րդ մասը, քանի որ այստեղ կան նոր մտքեր ու մոտեցումներ, զգալի են փոփոխությունները, տրվել են կուսակցության ղեկավարման ապակենտրոնացման և սկզբնական կուսկազմակերպությունների իրավունքների ընդլայնման գաղափարները: Սկզբնական օղակի իրավունքների ընդլայնումը, որպես կուսկազմակերպության քարտուղար, համարում եմ անհրաժեշտ, որովհետև, հանդիսանալով կուսակցության հիմքը, նա պետք է օժտված լինի ինքնուրույն գործելու, իր կարծիքը արտահայտելու և նախաձեռնություն դրսևորելու լայն հնարավորություններով: Ըստ իս պետք է մշակվի հստակ մեխանիզմ սկզբնական կազմակերպությունների նախաձեռնության և նրանց ընդունած որոշումների գործնական իրագործման համար: Օրինակ, նրանց առաջադրած հարցերը վերադաս կուսակցական կոլեգիալ մարմինը պետք է քննարկի պարտադիր կերպով ու կոնկրետ ժամանակում և պատասխան տա: Նրանց պետք է նաև իրավունք վերապահվի՝ տնօրինելու կոմունիստներից գանձված անդամավճարի մի մասը (մեր կազմակերպության կոմունիստների առաջարկությունն է 50 տոկոսը), լուծելու կուսակցության մեջ ընդունելության վերջնական հարցերը: Առաջարկում եմ պարզեցնել նաև ընդունելության հետ առնչվող փաստաթղթերի ձևակերպումը (կարելի է թողնել ընդունվողի դիմումը և անկետան՝ որոշ ձևափոխումներով):

Պլատֆորմի նախագծում նշված չէ, սակայն կարևոր եմ համարում, որ կուսակցության մեջ ընդունելության ժամանակ չկրկնվի անցյալի սխալը, այն է՝ տարբերություն չդրվի բանվորի, գյուղացու կամ ծառայողի և ինժեներատեխնիկական աշխատողի միջև: Այս ամենը կնպաստի սկզբնական կուսկազմակերպությունների ամրապնդմանը և նրանց հեղինակության բարձրացմանը:

Հաշվի առնելով մեր կոմունիստների կարծիքը՝ գտնում եմ, որ պետք է նվազեցվի անդամավճարների չափը, սահմանվի մի ընդհանուր գումար կամ տոկոս, անկախ վաստակի չափից: Անդամավճար չպետք է պահվի կենսաթոշակառու կոմունիստներից (կամ պահվի շատ չնչին, սիմվոլիկ բնույթ կրող անդամավճար): Աշխատող կենսաթոշակառուներից պետք է անդամավճար գանձվի միայն աշխատավարձից: Հաշվի առնելով կենսաթոշակի անցած կոմունիստների արժանիքները՝ ճիշտ կլիներ սահմանել «Կուսակցության վետերան» կոչում և ազատել նրանց կանոնադրական որոշ պարտականություններից:

Այսօր առաջնակարգ խնդիրը, որ դրված է հանրապետության կոմունիստների առջև, իմ կարծիքով հետևյալն է. պետք է որոշվի Հայաստանի կոմկուսի ինքնուրույնության հարցը: Գտնում եմ, որ այն կարելի է որոշել կոմունիստների շրջանում հանրաքվե անցկացնելու միջոցով: Ներկայումս կա երկու հնարավոր լուծում. առաջին՝ բավարարվել պլատֆորմի նախագծով ներկայացված հնարավորություններով, երկրորդ՝ ստեղծել Հայաստանի լրիվ ինքնուրույն կոմկուսակցություն, որն ունենա ԽՄԿԿ ծրագրի ու կանոնադրության հիմնական դրույթներին չհակասող ծրագիր ու կանոնադրություն և ԽՄԿԿ-ի հետ համագործակցի միայն ֆեդերատիվ հիմունքներով: Ես կողմնակից եմ երկրորդ տարբերակին:

Ա. ԲԵԳՈՅԱՆ

*«Ջափիչ» գործարանի կուսկոմիտեի քարտուղար, ՀԿԿ Աբովյանի շրջկոմի բյուրոյի անդամ*



# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԻՐԱՎԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ

**Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**

ԱՎԱՐՏՎՈՒՄ Է XX ԴԱՐԸ, սոցիալական և ազգային-ազատագրական հեղափոխությունների դարը, որոնցում առանձնահատուկ դեր է պատկանում Հոկտեմբերյան հեղափոխությանը, որով և սկսվել է համաշխարհային սոցիալիստական գործընթացը: Բայց այսօր իսկ մենք պարտավոր ենք ինքներս մեզ հարց տալ. XX դարում սոցիալիզմի կազմավորման ականատեսը դարձած մարդկությունը XXI դարի շեմին նրա անկման ականատեսը չի՞ դառնում արդյոք:

Այս հարցը ծագեց այն ժամանակ, երբ ակնհայտ դարձավ, որ, չնայած բազմաթիվ խոստումներին, սոցիալիզմը (իսկ ավելի ճիշտ կլինի ասել՝ նրա ստալինյան մոդելը) ի վիճակի չեղավ ապահովելու այնպիսի դեմոկրատական ու տնտեսական նվաճումներ, որոնք սոցիալիստական հասարակարգում մարդկանց կյանքը դարձնեին ավելի լավ, քան մի շարք զարգացած կապիտալիստական պետություններում:

Մեր հասարակության կյանքի բոլոր ոլորտներում տեղի ունեցող վերակառուցումը թե՛ զարգացման անխուսափելի փուլ է, թե՛ ճգնաժամից ծնունդ առած հազվագյուտ իրավիճակ: Կյանքը հրամայաբար պահանջում է լուծել մեր հասարակության գոյության տարբեր կողմերին վերաբերող բազում պրոբլեմներ: Դրանք բոլորը փոխկապակցված են ու փոխպայմանավորված, և դրանց լուծումը հնարավոր է իրավական պետություն ստեղծելու միջոցով:

Սոցիալիստական իրավական պետության ձևավորման պահանջը ոչ թե քմահաճույք է, այլ ժամանակի օբյեկտիվ պահանջ: Դրա ստեղծումը համամարդկային բնույթ ունի, թեև, նայած սոցիալական շահերին, ազգային առանձնահատկություններին, կուլտուրայի մակարդակին և շատ այլ գործոնների, կարող է մեկնաբանվել ու իրականացվել տարբեր ձևով: Մեր կարծիքով, սոցիալիզմն ի վիճակի է ստեղծել տնտեսական, քաղաքական և սոցիալական այնպիսի պայմաններ, որոնց առկայության դեպքում կարող է գործել իրավական պետությունը: Վերջինիս ձևավորումը հնարավորություն է ընձեռում նորովի, ավելի լայնորեն մոտենալու մարդու պրոբլեմին, առաջին հերթին՝ նրա իրավունքների, ազատությունների ու շահերի տեսանկյունից:

Մարդու, նրա գոյության պրոբլեմը՝ նյութական, հոգևոր և բարոյական ասպեկտների առումով, մարդկության ամբողջ պատմության ընթացքում նրա առջև երբևէ ծառացած ամենահիմնական պրոբլեմն է: Այն մեր օրերում ևս ծառացել է որպես ամենաբարդ գիտական պրոբլեմ, որպես հրատապ գործնական խնդիր, որն առնչվում է ոչ թե պարզապես իրավական պետության ձևավորման, այլ նոր հասարակարգի կառուցման հետ, որի պայմաններում, ինչպես այդ շեշտել են Կ. Մարքսը և

*ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ ԱՐՄԵՆ ՇՈՒՐԱՅԻ— Երևանի պետհամալսարանի պետական, վարչական և միջազգային իրավունքի ամբիոնի ասիստենտ, իրավաբանական գիտությունների թեկնածու*

փականության հարցում առաջնությունը կրկին չի ապահովվում այն ժողովրդի համար, որն ապրում է տվյալ տարածքում՝ անկախ ազգային-պետական կառուցվածքի ձևից:

Իրավական պետությունում պետք է ապահովվի օրենքի առաջնությունը թե՛ ներպետական կյանքում, թե միջազգային քաղաքականությունում: Օրենքը չի կարելի դիտել սոսկ որպես պետական հարկադրման միջոց: Դա համամարդկային, սոցիալ-խմբային (այդ թվում նաև ազգային), անձնական շահերի պաշտպանության և ներդաշնակման գործիք է: Ուստի իրավական պետություն ստեղծելու համար անհրաժեշտ է անձի իրավունքների և ազատությունների պահպանության սոցիալ-իրավական հուսալի մեխանիզմ մշակել: Այդ առնչությամբ մեզ լրջորեն մտահոգում է իրավագիտության հետ մնալը անձի իրավական ստատուսի համալիր ուսումնասիրման գործում: Պետք է նորովի իմաստավորել մարդու իրավունքների օրենսդրական կարգավորման պրոբլեմը: Անհատի և պետության փոխհարաբերությունների ներդաշնակումը պետք է կատարվի իրավունքի, օրենքի հիման վրա, ինչպես դա ընդունված է իրավական պետությունում:

Ֆ. Էնգելսը գրել է. «Մեզ համար անխախտ է այն, որ կառավարողների և կառավարվողների հարաբերությունները պետք է իրավունքի հիման վրա սահմանվեն ավելի վաղ, քան դրանք կարող են դառնալ ու մնալ ջերմագին: Նախ՝ իրավունք, հետո՝ արդարացիություն (Маркс К. и Энгельс Ф., Соч., т. 41, стр. 125): Ուստի ռեֆորմը պետք է ընդգրկի խորհրդային օրենսդրության բոլոր ոլորտները, ընդ որում, անձի իրավունքների և դեմոկրատիայի պահպանումը պետք է դառնա այն չափանիշը, որով պետք է ստուգել իրավական ռեֆորմի վերջնական արդյունքները:

Սոցիալիստական իրավական պետությունը պետք է մարդու իրավունքները ոչ միայն հռչակի ու ամրապնդի օրենսդրական ակտերում, այլև ռեալ կերպով երաշխավորի և պաշտպանի դրանք: Անհրաժեշտ է հնարավորին չափ արագ ընդունել մարդկանց քաղաքական ակտիվությունն ամրապնդող ու երաշխավորող ակտեր՝ խղճի ազատության, մամուլի և, որ շատ կարևոր է, բազմաթիվ ժողովուրդների իրավունքների մասին օրենքներ և այլ այնպիսի նորմեր, առանց որոնց անհնար է դեմոկրատական հասարակություն վերականգնել: Ոչ պակաս հրատապ է կենցաղային ոլորտում իրավական երաշխիքների ստեղծումը: Քաղաքացին առայժմ պաշտպանված չէ իր ամենօրյա գործունեության ամենատարրական դրսևորումներում՝ սկսած բնակարանային մարմինների հետ փոխհարաբերություններից և վերջացրած առևտրի հիմնարկություններով:

Իրավական պետությունն աներևակայելի է առանց օրենքի հանդեպ ցանկացած պաշտոնատար անձանց կողմից իրենց պարտականությունների խախտման համար պատասխանատվության հստակ և կոնկրետ իրավական միջոցառումների: Ամեն մի չկատարված կամ ոչ պատշաճ ձևով կատարված գործի հետևում կանգնած են որոշակի մարդիկ կամ անձանց խումբ, և առանց պաշտոնատար անձանց ռեալ պատասխանատվության չի կարելի հուսալ, թե մինիստրությունների, գերատեսչությունների, կուսակցական մարմինների գործունեության արդյունավետությունը կբարձրանա: Մի խոսքով, իրավական պետությունը պետք է հենվի իրավական պատասխանատվության հստակորեն գործող մեխանիզմի վրա: Սակայն դա չի նշանակում, որ սոցիալիստական իրավական պետության կառուցումը հանգեցվում է օրենսդրության կատարելագործմանը: Տվյալ դեպքում հենց օրենսդրական կարգավորումը պետք է հաշվի առնի բարոյական նորացման այն գործընթացները, որոնք տեղի են ունենում հասարակությունում: Հետևաբար, սոցիալիստական իրավական պետության էությունը պետք է արտահայտվի խորհրդային մարդու դերի բարձրացմամբ: Չէ՞ որ ժողովրդի գերակայությունը բոլոր հեղափոխությունների դրոշն է եղել, և հենց դա էլ սոցիալիստական հասարակարգի հիմնական սկզբունքն է. «Ապահովել իրեն ընդդեմ իր իսկ դեպուտատների և չինովնիկների... մինչև որ նոր, ազատ հասարակության պայմաններում աճած սերունդն ի վիճակի լինի դեն շպրտելու պետականության այդ ամբողջ անպետքությունը» (Маркс К. и Энгельс Ф., Соч., т. 22, стр. 199, 201):

Մեծ փոփոխությունների պետք է ենթարկվի իրավաստեղծ գործընթացը մեր երկրում: Անցած տարիների քաղաքական, իրավական և գաղափարախոսական ձևախեղումները մեծապես աղճատել են մեր իրավական գիտակցությունը: Իրավաստեղծ գործունեության պրակտիկան, անձի իրավական պաշտպանվածության պրոբ-



լեմի նկատմամբ երկրի իրավաբանական մարմինների մոտեցումը լուրջ թերություններով էին տառապում: Իրավական կարգավորման ոլորտից դուրս էին մնում մարդկանց սոցիալական, կենսաբանական և ֆիզիոլոգիական շատ առանձնահատկություններ, որոնք այսօր պետք է հաշվի առնի օրենսդիրը: Փաստորեն այն տպավորությունն էր ստեղծվում, որ պետությունը դաստիարակում է իր ժողովրդին, ըստ որում այնպես, ինչպես իրեն է հարմար: Տվյալ դեպքում տեղին է հիշեցնել, որ Կ. Մարքսը ծաղրել է ժողովրդի դաստիարակ-պետության մասին դրույթը: Նա ասում էր, որ հենց պետությունը պետք է ամենախիստ դաստիարակության ենթարկվի ժողովրդի կողմից (տե՛ս Маркс К. и Энгельс Ф., Соч. т. 19, стр 30): Իրավական պետությունում օրենսդիրը պետք է հաշվի առնի մարդու՝ որպես իրավունքի սուբյեկտի, անձնային-սոցիալական հատկանիշները և դրանք ամրապնդի իրավական կարգագրերում: Մարդկանց կենսաբանական, սոցիալական, ֆիզիոլոգիական նշված հատկանիշներն առանձնակի նշանակություն ունեն իրավակարգավորիչ գործունեության համար: Այդ առնչությամբ Կ. Մարքսը գրել է. «Օրենսդիրը իրեն պետք է դիտի որպես բնախույզի: Նա օրենքներ չի **կերտում**, նա չի հորինում դրանք, այլ միայն ձևակերպում է, ստույգ գիտակցական օրենքներով արտահայտում է հոգևոր հարաբերությունների ներքին օրենքները» (Մարքս Կ. և Էնգելս Ֆ., **Երկեր**, հ. 1, էջ 179):

Պետք է նշել, որ համապատասխան իրավունքների և ազատությունների իրականացման մեխանիզմը ևս լուրջ կատարելագործման կարիք ունի: Իսկ քաղաքացիների որոշ իրավունքներ իրավաբանական մեխանիզմով չեն ամրապնդված դրանց իրականացման նկատառումով: Այդպիսի պաշտպանության ամենահուսալի գործիքը դատարանն է: Իրավական պետությունում դատական ընթացակարգը պետք է հիմք դառնա քաղաքացիների իրավունքների և ազատությունների պաշտպանության գործում: Դատարանը պետք է հանդես գա ամենից առաջ որպես անհատի իրավունքների երաշխավոր: Նա փաստորեն պետք է ճշմարտության և արդարացիության հաստատման, այլ ոչ թե հաշվեհարդարի մարմին դառնա: Այդ բնագավառում ամեն մի ռեֆորմ պետք է նպատակամղվի այն բանին, որպեսզի դատարանը ինքնուրույն, հեղինակավոր և անկախ մարմին դառնա, քանի որ առանց դրա չենք կարող իրավական պետություն կառուցել: Եվ առաջին հերթին պիտի փոխել դատական կորպուսի ձևավորման հենց գործընթացը: Իրավական պետությունում դատարանը պետք է առաջնորդվի նախորդ տարիներին գրեթե միշտ անտեսված երկու սկզբունքով: Խոսքը դատավարության ժամանակ անմեղության կանխավարկածի և կողմերի մրցակցականության մասին է: Այդ առնչությամբ պետք է բարձրացնել փաստաբանության դերը, ընդլայնել նրա իրավունքները և հնարավորությունները գործը վարելու բոլոր փուլերում: Պետք է ապահովել քաղաքացիների իրավահավասարությունն օրենքի առաջ, բարձրացնել ատենակալների դերը դատավարության ժամանակ, ընդլայնել պաշտպանների մասնակցությունը նախնական հետաքննությանը:

Իրավական պետության կառավարման հետ կապված մյուս շատ կարևոր պրոբլեմը խորհրդային ֆեդերացիայի հարցն է: Վերակառուցումն ալեկոծեց խորհրդային հասարակության բոլոր խավերին, բացահայտեց նրա բոլոր խոցերը, որոնցից մեկն ազգային հարցն է: Պետք է կոնսենսուս (համաձայնություն) գտնել ազգային հարցը լուծելիս: Դա հնարավորություն կընձեռի առաջացած պրոբլեմները լուծել արդարացիության և ողջախոհության հիման վրա, այլ ոչ թե դրանք օրենսդրական փակուղի մտցնել: Այդպիսի հարցեր վճռելիս պետք է մերժել ուժային ճնշման ամեն մի մեթոդ և դրանց կիրառման համար մեղավորներին պատասխանատվության ենթարկելու մեխանիզմ ստեղծել: Դա կբացառի մեկ կողմի կամայականության պատճառով մյուս կողմի շրջափակման հնարավորությունը, որն այսօր գործադրվում է մեր հանրապետության նկատմամբ:

Իրավական պետությունում ընդունված չէ այն սկզբունքը, ըստ որի ԽՍՀՄ-ի որոշ ժողովուրդներ ընդլայնում և խորացնում են իրենց սուվերենությունը ուրիշ ժողովուրդների, մասնավորապես նրանց հաշվին, որոնք փաստորեն զրկված են պետականություն ունենալու հնարավորությունից: Չէ՞ որ, ըստ գործող սահմանադրության, բացի միութենական և ինքնավար հանրապետություններից, մյուս բոլոր ինքնավար կազմավորումները բացառապես տարածքային ինքնակառավարման ձևեր են համարվում: Այստեղից էլ առաջանում է տարբեր ժողովուրդների թե՛ փաստական անիրավահավասարություն, թե՛ այնպիսի հնարավորություն, որ մեկ կողմն իր պայմանները թելադրի մյուսին:

Անհրաժեշտ է վերացնել ԽՍՀՄ-ի տարբեր ազգերի ու ազգությունների այդպիսի փաստական անհավասարությունը: Անհասկանալի է, թե մեր երկրում ինչպիսի՞ չափանիշներով են ղեկավարվել այն պարագայում, երբ 2 միլիոն թուրքմեններ իրենց նախնիների հողում հանրապետություն են ստեղծել, մինչդեռ 7 միլիոն թաթարներ մինչև օրս զրկված են այդպիսի հնարավորությունից:

Սուվերենությունը պետականության այս կամ այն ձևն ունեցող ժողովրդի բացառիկ գիծը չէ: Դա նաև այդպիսի ձևեր չունեցող այլ ժողովուրդների, օրինակ, ինքնավար մարզերում և օկրուգներում ապրող ժողովուրդների իրավունքն է: Եվ դա արտահայտվում է ինքնորոշման, ընդհուպ մինչև անջատման և անկախ պետության ստեղծման նրանց իրավունքով: Ուստի, երբ խոսվում է միութենական հանրապետությունների սուվերենության ընդլայնման մասին, պետք է հաշվի առնել նաև ինքնավար կազմավորումների շահերը, եթե այդպիսիք կան այդ հանրապետությունների կազմում:

Պետք է ապահովել հանրապետությունների՝ որպես պետությունների, ինքնուրույնությունը, սակայն միութենական պետության շրջանակներում այն պայմանագրի հիման վրա, որը որոշում է նրանց իրավասության սահմանները: Հարկավոր է ընդլայնել միութենական հանրապետությունների և ինքնավար կազմավորումների իրավասությունը, որովհետև մեր երկրի պատմությունը ցույց է տալիս, որ ժամանակի ընթացքում այդ իրավասության սահմանները նեղացել են: Օրենսդրական կարգավորման ընթացքում պետք է ռեալ կերպով կիրառել տեղական առանձնահատկությունները հաշվի առնելու սկզբունքը: Անհասկանալի է, օրինակ, թե ինչու Հայկական ԽՍՀ-ում, որի ողջ տարածքում ոչ մի սթափարան չկա, նույնպես չոր օրենք է մտցվել: Դա արդեն ձևականություն է, այդպիսի բան կարող է տեղի ունենալ ունիտար, բայց ոչ ամենևին ֆեդերատիվ պետությունում: Հանրապետությունների և ինքնավար կազմավորումների բյուջեները պետք է ինքնուրույն լինեն և չպետք է համապատասխան կենտրոնների կողմից հաստատվեն:

Իրավական պետության կառուցումը մեր դարաշրջանի հրամայական պահանջն է դարձել: Պետք է մտածել և գործել հանուն մարդու և մարդկության, իսկ այդ նպատակը տանող ուղին մարդասիրական ու դեմոկրատական հասարակության ստեղծումն է, որպիսին մենք համարում ենք նաև սոցիալիզմը: Հասարակության և հենց մեր, մեր մտածողության ու գիտակցության հեղափոխական վերակառուցման ժամանակաշրջանը խորհրդային պետության մարդասիրական նորացման ռեալ նախադրյալներ է ստեղծում: Եվ իրավագիտության բարձրագույն կոչումն է՝ ըստ ամենայնի նպաստել այդ ազնիվ նպատակի իրականացմանը:

# ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ ԵՎ ԱՆՀԱՏԻ ԿԵՆՍԱԴԻՐՔՈՐՈՇՈՒՄԸ

**Հ. ՄՈՔՈՅԱՆ**

ՄԵՐ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԱՐԴԻ ՓՈՒԼԻՆ բնորոշ է տեղի ունեցող պրոցեսներին մասսաների լայն մասնակցությունը, քանզի «որքան ավելի խորն է այն վերափոխությունը, որ մենք ուզում ենք կատարել, այնքան ավելի շատ հետաքրքրություն և գիտակցական վերաբերմունք պետք է առաջ բերել նրա նկատմամբ, նորանոր միլիոնավոր և տասնյակ միլիոնավոր մարդկանց համոզել նրա անհրաժեշտության մեջ» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 42, էջ 173—174):

Անհատի ակտիվ կենսադիրքորոշման ձևավորման պրոբլեմը մեր քաղաքական գրականությունում ավանդաբար դիտարկվել է որպես յուրաքանչյուր անհատի գիտակցության մեջ կոմունիստական աշխարհայացքի և մարքս-լենինյան գաղափարախոսության հիմնական դրույթների ներդրմանը նպատակաուղղված լուսավորչական գործունեություն: Այդ իմացաբանական-լուսավորչական մոտեցումը, իհարկե, ի վիճակի չէր իրոք ձևավորելու անհատի ակտիվ կենսադիրքորոշումը, քանի որ մարդուն շրջապատող ռեալ հասարակական պայմանները, սոցիալական իրականությունն ամբողջությամբ, առավել հզոր կերպով էին ներգործում նրա աշխարհայացքային կողմնորոշումների և վարքում ու գործունեությունում դրանց իրականացման վրա: Որպես հետևանք ձևավորվում էր մի այնպիսի անհատի տիպ, որն ուներ «երկակի» գիտակցություն. պաշտոնական-գաղափարախոսական, որում առկա էին վարքագծի հասարակայնորեն ընդունված նորմատիվներ, և սոցիալ-հոգեբանական, որում անհատի վարքագծի նորմերն ամենևին էլ չէին համընկնում պաշտոնական հռչակվածներին:

Սոցիալիզմի օրոք անհատի կենսադիրքորոշման ակտիվացման պայմանը անհատական գիտակցության մակարդակով հասարակական նպատակների, զգացմունքների և շահերի ձևավորումն է: Այնպիսի հասկացությունները, ինչպիսիք են «սոցիալիստական հայրենիքը», «փոքր հայրենիքը», «ազգային հպարտությունը», «ինտերնացիոնալ միասնությունը», պետք է լցվեն իրական բովանդակությամբ: Այդ իսկ առնչությամբ, մեր կարծիքով, պետք է այսօր շեշտը դնել մարդկանց կենսադիրքորոշումն ակտիվացնելու նպատակով տարվող գաղափարախոսական աշխատանքի վրա:

Մարդկային գործունեության կարևորագույն ոլորտը տնտեսությունն է, որում նախատեսվում է վճռական շրջադարձ կատարել դեպի ինտենսիվացում՝ գիտատեխնիկական առաջընթացի հիման վրա: ԽՄԿԿ տնտեսական ստրատեգիայում միանգամայն հաշվի է առնվում նյութական բարիքների արտադրության եղանակի երկու կողմերի դիալեկտիկան: Հատկապես պետք է շեշտել նրա սոցիալական ուղղվածությունը՝ չէ՞ որ սոցիալիզմի օրոք տնտեսությունը պետք է կողմնորոշվի դեպի աշխատավորների հարաճուն պահանջմունքների բավարարումը: Աշխատանքի ոլորտը՝ որպես մարդկային գործունեության գլխավոր ոլորտ, պետք է դառնա մարդկանց բազմազան ֆիզիկական ու հոգևոր ունակությունների անմիջական դրսևորման և զարգացման ոլորտ:

Վերջին հնգամյակների ընթացքում մեր երկրի ժողովրդական տնտեսության արտադրողականությունն ու աճի տեմպերը իջել են: Վիճակագրական տվյալները ցույց են տալիս, որ հետպատերազմյան տարիներին մի շարք սոցիալիստական և

*ՄՈՔՈՅԱՆ ՀԵՆՐԻԽ ՇԱՎԱՐՇԻ — Կ. Մարքսի անվան ԵրՊԻ-ի փիլիսոփայության ամբիոնի ավագ դասախոս, փիլիսոփայական գիտությունների թեկնածու:*

կապիտալիստական երկրներում տնտեսության աճի տեմպերն ավելի բարձր են եղել, քան ԽՍՀՄ-ում: Այսպես, արդյունաբերության մեջ մեզանում 1988 թվականին աշխատանքի արտադրողականությունը, 1950 թվականի համեմատությամբ, աճել է 6,7 անգամ, Բուլղարիայում՝ 8,4, ԳԴՀ-ում՝ 8, Ռումինիայում՝ 12,5, Ճապոնիայում՝ 13,5 անգամ: Ինչ վերաբերում է գյուղատնտեսությանը, ապա 1960 թվականին Խորհրդային Միությունում աշխատանքի արտադրողականության մակարդակը մոտավորապես երեք անգամ ցածր էր, քան Միացյալ Նահանգներում, իսկ այսօր՝ գրեթե հինգ անգամ: Տնտեսությունը փակուղուց դուրս բերելուն կնպաստեն աշխատավոր մարդու նախաձեռնության ապակաշկանդումը, նրա աշխատանքի վարձատրումն ըստ վերջնական արդյունքների:

Մարդկանց կենսադիրքորոշման ակտիվությունը բարձրացնելուն միտող տնտեսական մեխանիզմի վերակառուցման ուղղություններից մեկը տնտեսության դեմոկրատացումն է: Արտադրության ոլորտում դեմոկրատիայի զարգացումը խտացված կերպով արտահայտվեց պետական ձեռնարկության (միավորման) մասին օրենքի ընդունման փաստում: Աշխատավորների ինքնակառավարումը նրանում ներկայացված է որպես կարևորագույն սկզբունքների օրգանական միասնություն: Առաջին, կոլեկտիվներին հնարավորություն է ընձեռվում ակտիվորեն մասնակցելու բոլոր որոշումների մշակմանը, ընդունմանն ու իրագործմանը: Երկրորդ, նախատեսվում է ղեկավարների՝ դիրեկտորի, նրա տեղակալների, արտադրամասերի պետերի, բրիգադավարների, մյուս ստորաբաժանումների պետերի ընտրովիությունը: Դա սկզբունքային նշանակություն ունի, որովհետև այդ դեպքում ղեկավարները կզգան անմիջական կախվածություն կոլեկտիվի անդամներից, իսկ մրցութային համակարգը հնարավորություն կընձեռի ընտրելու ամենաարժանավորներին (թեպետև առաջին փուլում առանձին թերացումներ անխուսափելի են): Եվ, վերջապես, երրորդ, պետական ձեռնարկության մասին օրենքը պահպանում ու ամրապնդում է միանձնյա ղեկավարության սկզբունքը դեմոկրատական հիմունքներով:

Լայն լիազորություններ են տրվում աշխատավորական կոլեկտիվների խորհուրդներին, որոնք իրենց գլխավոր ուշադրությունը պետք է սևեռեն աշխատավորների ստեղծագործության զարգացման, ընդհանուր գործում յուրաքանչյուր աշխատավորի աշխատանքային ներդրման մեծացման վրա: Աշխատանքային կոլեկտիվի խորհուրդը կարող է անհատի կենսադիրքորոշման վրա ներազդել նյութական ու բարոյական խրախուսման միջոցների, մարդկանց պետական պարգևների ներկայացնելու, սոցիալ-կենցաղային պրոբլեմների լուծման հետ կապված և այլ հարցերի քննարկման վերաբերյալ առաջարկություններ մտցնելու միջոցով:

Անհատի կենսադիրքորոշման ակտիվացման մասին է վկայում Խորհրդային Հայաստանի բնակչության մասնակցությունը Հայկական ԽՍՀ սահմանադրության (հիմնական օրենքի) փոփոխությունների ու լրացումների քննարկմանը: Ըստ քննարկման արդյունքների, սահմանադրության նախագծի 42 հոդվածներից առաջարկվեց խմբագրել և փոփոխել 23-ը: Ստացվել են 723 առաջարկներ: Եղել են առաջարկներ նաև հիմնական օրենքի յոթ այլ հոդվածների վերանայման, սահմանադրությունը երկու նոր հոդվածներով լրացնելու մասին: Ընտրությունների մասին օրենքների նախագծերի առթիվ ստացվել է 581 առաջարկ (տե՛ս газета «Коммунист», 1989, 6 декабря):

Ձեռնարկությունների ադմինիստրացիան և կուսակցական կազմակերպությունները պետք է օգնեն աշխատանքային կոլեկտիվների խորհուրդներին մարդկային գործոնի ակտիվացման իրենց ամենօրյա աշխատանքում այնպիսի միջոցների ձեռնարկմամբ, որոնք ուղղված կլինեն աշխատավորների մասնագիտական վարպետության կատարելագործմանը, նրանց քաղաքական, կուլտուրական և հանրակրթական մակարդակի աճին, ձեռնարկության առջև ծառացած խնդիրների լուծման համար գործարարության և պատասխանատվության բարձրացմանը, սեփական կոլեկտիվի համար հպարտության և վերջնական բարձր արդյունքներ ձեռք բերելու նկատմամբ շահագրգռության ոգով կադրերի դաստիարակմանը:

Կարծում ենք, որ արդի պայմաններում հարկ է նաև ինքնակառավարման մարմինների աշխատանքի բովանդակությունն ու ձևերը փոփոխել այնպես, որպեսզի նրանք գործնականում աշխատավորներին ներգրավեն ձեռնարկությունների կառավարմանը: Ընդ որում դա անհրաժեշտ է անել աշխատավորների իսկ կարծիքները, նրանց առաջարկությունները հաշվի առնելու հիման վրա: Մարդիկ իրենց ներկայացուցիչների միջոցով աշխատավորական կոլեկտիվների խորհուրդներում պետք է



իրենք մասնակցեն իրենց համար կենսականորեն կարևոր որոշումների մշակմանն ու ընդունմանը: Միայն այդ դեպքում նրանք լիովին կդրսևորեն իրենց ակտիվությունն ու շահագրգռությունը, երբ, ինչպես գրում է Կ. Մարքսը, «զարգանում է ժողովրդի կառավարումը իրեն իսկ ժողովրդի միջոցով» (Маркс К. и Энгельс Ф. Соч., т. 17, с. 350):

Կառավարման գործում մասսաներին ակտիվորեն ներգրավելը ԽՄԿԿ-ի սոցիալական քաղաքականության բաղադրիչ մասն է և սոցիալիստական դեմոկրատիայի հիմնական հատկանիշը: Սոցիալիզմի էական գիծը իսկական ժողովրդավարության հաստատումն ու կատարելագործումն է:

Սոցիալ-քաղաքական մարզում դեմոկրատացումն իրականացվում է սոցիալական որոշումներ ընդունելու և իրականացնելու գործում աշխատավորների ակտիվ մասնակցության, սոցիալիստական դեմոկրատիայի ինստիտուտների կատարելագործման, ընտրովի մարմինների դերի իրական բարձրացման, կառավարման ապարատի գործունեության նկատմամբ նրանց վերահսկողության ուժեղացման միջոցով:

Ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման գլխավոր օղակը ժողովրդական դեպուտատների խորհուրդներն են, որոնց բացառիկ կարևոր տեղ է վերապահված ժողովրդական ներկայացուցչության ձևերի զարգացման խնդրում: Բնութագրելով սովետները, Վ. Ի. Լենինը գրել է. «Սա մի իշխանություն է, որը բաց է բոլորի համար, որ ամեն ինչ անում է մասսայի աչքի առջև, մատչելի է մասսային, ելնում է անմիջականորեն մասսայից, ժողովրդական մասսայի և նրա կամքի ուղղակի և անմիջական օրգանն է» (ԵԼԺ, հ. 42, էջ 383):

Ժողովրդական դեպուտատների խորհուրդների միջոցով աշխատավորները ներգրավվում են պետական կառավարման գործերին, նրանց հիման վրա է կառուցվում ազգային պետականությունը, նրանց միջոցով է իրականացվում կապը սոցիալիզմի քաղաքական սիստեմի մյուս տարրերի հետ: Մտաբերենք Վ. Ի. Լենինի հիշեցումն այն մասին, որ «ժողովուրդը, միավորված խորհուրդների միջոցով, ահա թե ով պետք է կառավարի պետությունը» (ԵԼԺ, հ. 31, էջ 229):

Արդի փուլում պետք է իրականացնել խորհուրդների գործունեության հետագա դեմոկրատացում: Այսօր աշխատավորներն այլևս չեն ցանկանում հաշտվել այն վիճակի հետ, երբ նրանց կենսագործունեության հետ կապված հարցերը լուծվում են առանց իրենց: Այժմ խորհուրդների աշխատանքում պահանջվում են հրապարակայնություն, կոլեգիալություն և մեծ ձեռնհասություն: Այդ իսկ պատճառով անհրաժեշտ է ավելի շատ խորհրդակցել մարդկանց հետ, հաշվի առնել նրանց կարծիքներն ու ցանկությունները: Դա թույլ կտա բարելավել բուն խորհուրդների գործունեությունը, քանի որ որոշումների քննարկմանը և ընդունմանը աշխատավորներին ներգրավելը հնարավորություն կընձեռի ընտրելու առաջադրված խնդիրների լուծման լավագույն ուղիները և բարձրացնելու մասսաների ակտիվությունը:

Անհատի ակտիվ կենսադիրքորոշման ձևավորմանը նպաստում են սահմանադրությունում խորհրդային քաղաքացիների ամրագրված իրավունքներն ու պարտականությունները, որոնք հանդես են գալիս օրգանական միասնության մեջ: Հատկանշական է, որ դրանք բոլորն էլ նպատակ ունեն բացահայտել անհատի ստեղծագործական ներուժը: Այսպես, ԽՍՀՄ սահմանադրությունում ամրագրված խոսքի, մամուլի ազատությունը, աշխատանքի, կրթության և այլ իրավունքները նպատակաուղղված են աշխատանքի մարդկանց հնարավորությունների իրականացմանը, մարդկային գործոնի ակտիվացմանը:

Սակայն իրավունքներն ու ազատությունները ոչ մի ընդհանուր բան չունեն ամենաթողության և անարխիայի հետ, քանի որ դրանցից բացի անհատն ունի նաև պարտականություններ: Հատկապես պետք է շեշտել, որ սոցիալիզմի պայմաններում պարտականությունները ևս նպատակաուղղված են մարդկային գործոնի ակտիվացմանը, անհատի ստեղծագործական ունակությունների զարգացմանը: Հետևապես, ազատությունների, իրավունքների և պարտականությունների հետագա ընդլայնումը լիովին ուղղված է այնպիսի կարևոր խնդրի լուծմանը, ինչպիսին ակտիվ կենսադիրքորոշման ձևավորումն է, քանզի ցանկացած պետական համակարգի գործառությունն սկսվում է մարդուց, նրա ձեռներեցությունից, գիտակցական նպատակամղվածությունից, քաղաքացիական ակտիվ դիրքորոշումից:

Այդ իմաստով միանգամայն հրատապ նշանակություն ունի հասարակության հոգևոր կյանքի դեմոկրատացումը, որն ամենալայն առումով օրգանապես կապված է հասարակական գիտակցության զարգացման և հասարակության հոգևոր վերա-

ծննդի հետ, քանի որ սոցիալիստական համամարդկային արժեքների հիման վրա ձևավորվում է նոր բարոյական մթնոլորտ: Դեմոկրատացման բնորոշ առանձնահատկությունն է հրապարակայնության, քննադատության և ինքնաքննադատության համընդհանուր հաստատումը: Արդի պայմաններում հատուկ նշանակություն է ձեռք բերում մարդկանց ստեղծագործական ուժերի ակտիվացման նպատակով սոցիալիստական հասարակության ներքին հնարավորությունների բացահայտման և իրականացման նկատմամբ շահագրգռվածությունը, որովհետև միայն դրա շնորհիվ են ձևավորվում անհատի քաղաքացիական հատկությունները:

Մենք անպայման կհաղթենք, ուսուցանում էր Վ. Ի. Լենինը, եթե սովորենք ուղիղ նայել ճշմարտության աչքերին և ասել ամբողջ, թող որ նույնիսկ դառը ճշմարտությունը: Ե՛վ կուսակցությունը, և՛ ժողովուրդը պետք է հստակ կերպով պատկերացնեն հասարակությունում առկա գործերի իրական վիճակը, որովհետև դա միայն հնարավորություն կտա և՛ օգտագործելու պատմական հնարավորությունները, և՛ վերացնելու թույլ տրված սխալները:

Դեմոկրատացումը, բարերար կերպով ներազդելով հասարակությունում տիրող բարոյահոգեբանական մթնոլորտի վրա, իր հերթին հոգևոր կյանքի բոլոր բնագավառներում ստեղծում է ազատ ստեղծագործության իրավիճակ, ենթադրում է միմյանցից տարբեր կարծիքների և հայացքների համադրում: Իսկ ոչ բավարար զարգացած դեմոկրատիայի, հրապարակայնության, քննադատության և ինքնաքննադատության բացակայության, ճշմարտության նկատմամբ մենաշնորհի, խմբակայնության և այլնի առկայության պայմաններում, մի կողմից, տեղի է ունենում հասարակության հոգևոր ներուժի արգելակում, իսկ մյուս կողմից նպաստավոր հող է ստեղծվում պատեհապաշտների, ստահակների, ապաշնորհ մարդկանց համար:

Միայն մեծացած ինքնուրույնության պայմաններում է հայտնվում անհատի իսկական պատասխանատվությունն իր և իր կոլեկտիվի համար: Օրինակ, ձեռնարկությունների անցումը լրիվ տնտհաշվարկի թելադրում է աշխատանքային կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի կողմից տնտեսագիտական համապատասխան գիտելիքներ յուրացնելու անհրաժեշտությունը: Սոցիալական խնդիրների պլանավորման և իրականացման գործում ակտիվորեն մասնակցելու համար հնարավոր չէ յոլա գնալ առանց յուրացնելու սոցիալիզմի օրոք սոցիալական քաղաքականության էությունն ու ֆունկցիաները: «Այսօր ամենակարևոր խնդիրը մարդուն հոգեպես բարձրացնելն է՝ հարգելով նրա ներաշխարհը, ամրապնդելով նրա բարոյական դիրքորոշումը: Հասարակության մտավոր ամբողջ պոտենցիալը, մշակույթի բոլոր հնարավորությունները մենք ձգտում ենք ի սպաս դնել սոցիալապես ակտիվ, հոգեպես հարուստ, արդարամիտ ու խղճմտանքով անհատի ձևավորմանը» (Մ. Ս. Գորբաչով, **Վերակառուցումը և նոր մտածողությունը մեր երկրի և ամբողջ աշխարհի համար**, Ե., «Հայաստան», 1988, էջ 30):

Անհատի ակտիվության մեծացման և մարքս-լենինյան գաղափարախոսության հիման վրա այդ ակտիվությունը կոնստրուկտիվ հունով մղելու համար հսկայական նշանակություն ունի հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության ճիշտ կազմակերպումը: Արդի պայմաններում այդ աշխատանքի առանձնահատկությունն ըմբռնելու համար պետք է նկատի ունենալ սոցիալական ոլորտի, ընդհանրապես ամբողջ հասարակական կյանքի, ներառյալ և ազգամիջյան հարաբերությունների մարզը, ընդլայնվող դեմոկրատացումը: Ազգամիջյան հարաբերությունների պրոբլեմների անտեսումը և ինտերնացիոնալ դաստիարակության թուլացումը գործնականում հանգեցնում է ազգայնամոլության ուժեղացմանը, որն անհատի ակտիվությունն ուղղում է դեպի վտանգավոր հուն: Մինչդեռ կյանքը ցույց է տալիս, որ ազգամիջյան հարաբերությունների պրոբլեմների լուծման գործում օպերատիվության բարձրացումն անհատի ակտիվ կենսադիրքորոշման օբյեկտիվ պայմանն է:

Վերջին ժամանակներս մենք ականատես ենք լինում ազգային ինքնագիտակցության սրընթաց աճի, դարերով ու հազարամյակներով ստեղծված սեփական ազգային արժեքներն ու հոգևոր հարստությունը ոչ միայն պահպանելու, այլև բազմապատկելու ձգտմանը: Երկրի մի շարք ռեգիոններում ազգամիջյան հարաբերություններում եղած պրոբլեմների լուծման արդարացի հիմք կարող է ծառայել հանրաքվեն:

«Երկրի տարբեր ռեգիոններում ազգամիջյան հարաբերությունների սրումը,— նշվեց ԽՄԿԿ Կենտկոմի 1989 թ. դեկտեմբերյան պլենումում,— ջրի երես հանեց տասնամյակներով կուտակված բազմաթիվ ժողովուրդների և ազգությունների դժգոհությունն իրենց քաղաքական, սոցիալ-տնտեսական և մշակութային վիճակից»:



Անհրաժեշտ է վերադառնալ ազգային հարցի լենինյան ըմբռնմանը և ազգային փոքրամասնություններին տալ ազատ սահմանադրական ընտրության իրավունք՝ ԽՍՀ Միության ֆեդերացիայի շրջանակներում: Այս կապակցությամբ ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների առաջին համագումարում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանը հիշեցրեց. «Տասնամյակներ շարունակ մենք կրկնել ենք լենինյան ազգային քաղաքականության մեծ ճշմարտությունը՝ բոլոր ժողովուրդները մեր երկրում հավասար են: Եվ տասնամյակներ շարունակ մեթոդիկ կերպով խուզել, բյուրոկրատական գազոնին են հարմարեցրել ազգամիջյան հարաբերությունների դալար ընձյուղները»:

Դեմոկրատացումը հանգեցրեց մշակութային կյանքի էական աշխուժացման: Այսպես, հասարակական կարծիքը դրականորեն է գնահատում այն փաստը, որ մարդկանց սեփականությունը դարձան գրականության և արվեստի այն ստեղծագործությունները, որոնք տարբեր պատճառներով նախկինում գտնվում էին արգելքի տակ: Գեղարվեստական մտավորականության ներկայացուցիչները համարձակ կերպով և բացահայտորեն բարձրացնում են ցավոտ հարցեր: Իհարկե, լինում են նաև սխալ կարծիքներ, որոնք, անշուշտ, անխուսափելի են և դրանք չպետք է դրամատիկականացնել:

Դաստիարակչական գործունեությունում դեմոկրատացումն արտահայտվում է նաև աշխատանքի անհատական ձևերի նկատմամբ ուշադրության մեծացմամբ: Նախկինում գոյություն ունեցող «համախառն» մոտեցումը հաճախ հանգեցնում էր այն բանին, որ կոնկրետ մարդիկ դուրս էին մնում տեսադաշտից, ոտնահարվում էին նրանց շահերը, հաշվի չէին առնվում նրանց պահանջմունքները:

Խոսելով սոցիալիզմի նորացման և որակապես նոր սոցիալ-տնտեսական կառուցվածքների ստեղծման մասին, պետք է ելնել այն բանից, որ տեղի է ունենում մեր ամբողջ սիստեմի շրջումը դեպի մարդը: Քայլ առ քայլ հասարակական հարաբերությունների հումանիզացումը դառնում է ոչ միայն խորհրդային հասարակական, տնտեսական ու սոցիալական կյանքի անհրաժեշտությունը, այլև ամբողջությամբ մեր հասարակության զարգացման ու կատարելագործման համար օրգանական պահանջմունք: «Վերակառուցումը ցույց տվեց, որ բոլոր պետական ու հասարակական գործերում, որպես գործունեության պատասխանատու սուբյեկտի, մարդու ռեալ ներգրավումը հնարավորություն կընձեռի հաղթահարելու մարդու օտարումը, խզումը ընդհանուր և անձնական շահերի միջև, բարձրացնելու անհատի ակտիվությունը հասարակական կյանքի բոլոր ոլորտներում» (Горбачев М. С. Социалистическая идея и революционная перестройка, «Коммунист», 1989, № 18, с. 15):

Վերակառուցումը վերացնում է անհատի քաղաքացիական, սոցիալական և քաղաքական ակտիվության աճի համար նախկինում գոյություն ունեցած սահմանափակումները, լրացուցիչ օբյեկտիվ նախադրյալներ է ստեղծում այդ ակտիվությունը հասարակական պրոցեսների մեջ ներառելու համար: Անհատի կենսադիրքորոշման ակտիվացման խնդիրը ենթադրում է, առաջին, ջարդել արգելակման մեխանիզմը և, երկրորդ, կոնստրուկտիվ աշխատանք տանել խորհրդային մարդկանց ակտիվության աճի համար լավագույն օբյեկտիվ ու սուբյեկտիվ պայմաններ ստեղծելու նպատակով: Այդ խնդրի լուծումը, մեր կարծիքով, հեղափոխական վերակառուցման, բանականության և հումանիզմի սկզբունքների հիման վրա հասարակության կառուցման ընդհանուր խնդրի լուծման անհրաժեշտ նախադրյալներից է:

# ԿԱՌՈՒՑՎԱԾՔԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՌԵԳԻՈՆԱԼ ՏՆՏՀԱՇՎԱՐԿԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ

ՅՈՒ. ՍՈՒՎԱՐՅԱՆ

ՆԵՐԿԱՅՈՒՄՍ ՏԻՐԱՊԵՏՈՂ Է ԱՅՆ ՃՇՄԱՐԻՏ ՏԵՍԱԿԵՏԸ, որ երկրի և դրա առանձին ռեգիոնների էկոնոմիկան ճգնաժամային վիճակից դուրս բերելու ելքը կառավարման վարչահրամայական համակարգի փոխարեն ինքնակառավարվող մի այնպիսի տնտեսական մեխանիզմի հետևողական արմատավորումն է, որի շարժիչ ուժերը տնտեսական լծակներն են և որում պլանն ու շուկան ապահովում են սոցիալիստական էկոնոմիկայի համամասնական և բարձր տեմպերով զարգացումը: Այդպիսի տնտեսական մեխանիզմի հիմքը արտադրության միջոցների սեփականության բազմաձևությունն է: Ահա թե ինչու լայն ասպարեզ է ընձեռվում վարձակալական հարաբերություններին, բաժնետիրական ընկերություններին, համատեղ ձեռնարկությունների ստեղծմանը, արտադրողների ասոցիացիաներին:

**Սեփականության** նոր ձևերի ստեղծման ու արմատավորման, տնտեսական մեխանիզմի վերակառուցման պայմաններում առանձնակի նշանակություն է ստանում ռեգիոնալ տնտհաշվարկը: Այն ապահովում է հանրապետությունների տնտեսական ինքնուրույնությունը, մեծացնում պատասխանատվությունն իրենց տնտեսական ու սոցիալական զարգացման, ռեսուրսների լավագույն օգտագործման, բնապահպան միջոցառումների իրագործման նկատմամբ: Լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման անցնելուց հետո հանրապետությունները պետք է ինքնուրույնաբար ապահովեն ընդլայնված վերարտադրությունը, անցնեն տնտեսական պայմանագրային հարաբերությունների: Այսպիսով, ապրանքադրամական հարաբերությունները կընդգրկեն ոչ միայն արտադրության հիմնական օղակը՝ ձեռնարկությունները, այլ նաև ռեգիոնները, միջհանրապետական և կենտրոնի հետ ունեցած փոխհարաբերությունները: Անցումը ռեգիոնալ տնտհաշվարկին նաև նշանակում է, որ միութենական հանրապետությունները պետք է մշակեն և իրագործեն այնպիսի տնտեսական քաղաքականություն, որը հնարավորություն ընձեռի ապահովելու ռեգիոնալ էկոնոմիկայի բարձր տեմպերով ու համամասնական զարգացումը, ժողովրդական տնտեսության բազմաբնույթ պահանջների բավարարումը: Այդ իմաստով առանձնապես կարևորվում է էկոնոմիկայի կառուցվածքային քաղաքականությունը, որը կազմավորում է դրա ճյուղային, նյութաիրային, արժեքային, սոցիալական և տարածքային համամասնությունները:

Ժողովրդական տնտեսության կառուցվածքը բնութագրվում է թողարկվող համախառն հասարակական արդյունքի կամ ազգային եկամտի տարեկան ծավալում նյութական արտադրության առանձին ճյուղերի, ստորաբաժանումների, սոցիալական սեկտորների, արտադրանքի արժեքային տարրերի նշանակությամբ՝ տեսակարար կշիռներով: Այն ձևավորվում է բազմազան և բազմաթիվ գործոնների ազդեցությամբ, որոնց մեջ առանձնանում են բնական ռեսուրսների առկայությունը, գիտատեխնիկական առաջադիմությունը, ժողովրդական տնտեսության պահանջը արտադրանքի տարբեր տեսակների նկատմամբ, այդ թվում առանձին ռեգիոնների համար՝ միութենական շահերի պաշտպանումը և այլն: Այս գործոնները բնորոշ են հատկապես միութենական էկոնոմիկայի համար, իսկ ռեգիոնների ժողովրդական տնտեսության կառուցվածքի ձևավորման վրա, բացի դրանից, առավելապես ակտիվ է առանձին միութենական հանրապետությունների տնտեսական ու սոցիալական զարգացման մակարդակների համահարթման քաղաքականության ազդեցությունը: Առաջին հայացքից այդ քաղաքականությունը հումանիստական է, բայց այն իր բնույթով հավասարարական մոտեցում է, որը հաճախ շրջանցում է արտադրողական ուժերի տեղաբաշխման սկզբունքները, ժողովրդական տնտեսության կառուցվածքի ձևավորման օբյեկտիվ գործոնները: Ահա թե ինչու միութենական հանրապետություններում կամ այլ վարչական կազմավորումներում հաճախ ժողովրդական տնտեսության կառուցվածքը համահունչ չէ ռեսուրսների առկայությանը և սոցիալական խնդիրների լուծմանը: Կառավարման վարչահրամայական համակարգի և հատկապես ճյուղային ղեկավարման սկզբունքի գործողության պայմաններում գրեթե աննշան, պասիվ-հայեցողական է կառավարման տեղական մարմինների դերը տնտեսական ու սոցիալական զարգացման ստրատեգիայի ու տակտիկայի մշակման գործում: Իսկ դա սոսկ սուբյեկտիվ գործոններով չի բացատրվում: Բավական է նշել, որ ժողովրդական տնտեսության առաջատար ճյուղի՝ արդյունաբերության արտադրանքի ավելի քան 48 տոկոսը թողարկվում է միութենական ենթակայության ձեռնարկություններում, որոնք կազմում են արդյունաբերության ժամանակակից ճյուղերը (մեքենաշինություն, քիմիական արդյունաբերություն, էներգետիկա և այլն) և գրեթե որոշում են հանրապետության էկոնոմիկայի զարգացման ուղղվածությունը: Ընդհանուր առմամբ, մեր հաշվարկներով, հանրապետության հասարակական արդյունքի ավելի քիչ մասը՝ շուրջ 34 տոկոսն է թողարկվում միութենական ենթակայության ձեռնարկություններում: Երկրի մասշտաբով մշակված տնտեսական քաղաքականությունը միասնական ֆեդերացիայի պայմաններում, անշուշտ, որոշիչ պետք է լինի առանձին ռեգիոնների համար: Սակայն դա չի նշանակում, թե պետք է անտեսվեն ռեգիոնալ առանձնահատկությունները: Տարիներ շարունակ մեր հանրապետությունում դրանք դրսևորվում էին գերազանցապես աշխատանքային ռեսուրսների լրիվ զբաղվածության ապահովման հայեցակետից: Դրանով էին պայմանավորվում կապիտալ ներդրումների ծավալը, ըստ ճյուղերի բաշխումը, առանձին արտադրությունների զարգացման տեմպերը: Չթերագնահատելով աշխատանքային ռեսուրսների լրիվ զբաղվածության կարևորությունը, սակայն, հարկ է նշել, որ այն չի կարող հանդիսանալ ռեգիոնալ տնտեսական քաղաքականության մշակման ելակետային չափանիշ: Առհասարակ, էկոնոմիկայի կառավարման խիստ կենտրոնացված բնույթը տեղական ու հանրապետական մարմինների դիրքորոշումը գիտականորեն հիմնավորված տնտեսական քաղաքականության մշակման ասպարեզում դարձել է ոչ ակտիվ, նույնիսկ՝ պասիվ, ոչ նախաձեռնողական: Այդ պատճառով բացակայում է նաև համակարգված մոտեցումը ժողովրդական տնտեսության կառուցվածքի ձևավորմանը, դեռևս չի մշակվել ու գործողության մեջ դրվել այդ գործում շատ անհրաժեշտ ըստ առաջնայնության հատկանիշի դասակարգված չափանիշների համակարգը: Նշված չափանիշների համակարգում, մեր կարծիքով, ելակետայինը կարող է ձևակերպվել հետևյալ կերպ. մնալով երկրի միասնական ժողովրդատնտեսական համալիրի բաղկացուցիչ մասը, մասնակցելով աշխատանքի միութենական բաժանմանը, ապահովել առավելագույնս ինքնավար և հիմնականում ինքնավերարտադրվող էկոնոմիկայի ձևավորումը՝ հենվելով առկա բոլոր ռեսուրսների խնայողաբար և լավագույն օգտագործման վրա, հաշվի առնելով բնակչության սպասարկմանն առնչվող սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման գերագույն անհրաժեշտությունը, մասնավորապես՝ բնակչության ապահովվածությունը պարենով, գյուղատնտեսական մթերքներով, լայն սպառման բազմազան առարկաներով: Ակնհայտ է, որ տնտեսական ինքնուրույնության և ռեգիոնալ տնտհաշվարկի պայմաններում այս չափանիշն ավելի է կարևորվում: Հանրապետության ժողովրդական տնտեսության կառուցվածքի ձևավորման համար ըստ իրենց նշանակության մյուս չափանիշները կարող են դասակարգվել այսպես.

— բնական ռեսուրսների լավագույն, խնայողաբար և էկոլոգիապես անվնաս օգտագործման անհրաժեշտությունը.

— գիտատեխնիկական առաջադիմության արագացմանը նպաստող, դրա նվաճումների կիրառումն ապահովող, մեր ժողովրդին բնորոշ բարձր ինտելեկտուալ պոտենցիալը խթանող և օգտագործող ճյուղերի զարգացումը.

— աշխատանքային ռեսուրսների լրիվ և արդյունավետ զբաղվածության ապահովումը.

---

*ՍՈՒՎԱՐՅԱՆ ՅՈՒՐԻ ՄԻՔԱՅԵԼԻ— տնտեսագիտության դոկտոր, պրոֆեսոր, Երևանի ժողովրդական տնտեսության ինստիտուտի պրոռեկտոր:*

— ժամանակակից ենթակառուցվածքային, ինչպես նաև սոցիալական աճն ապահովող ճյուղերի զարգացումը (տրանսպորտային, մատակարարման-իրացման, առևտրի, կապի, առողջապահության, կրթության, բնակչության կոմունալ-կենցաղային սպասարկման և այլն),

— մեր ժողովրդի ավանդական արտադրությունների զարգացումը:

Թվարկված չափանիշները գտնվում են փոխադարձ կապի մեջ և ելակետային չափանիշի հետ մեկտեղ հիմք կարող են ծառայել կառուցվածքային նոր, գիտական քաղաքականության մշակման ու իրագործման համար:

Մինչև հիմա գործնականում առավել ուշադրություն է հատկացվել ժողովրդական տնտեսության ճյուղային կառուցվածքին, որի հետևանքով ձևավորվել է ժողովրդական տնտեսության բավական առաջադիմական, սակայն վերը նշված ելակետային չափանիշին չհամապատասխանող ճյուղային կառուցվածք:

Ներկայումս հանրապետության հասարակական արդյունքի և ազգային եկամտի ծավալում գերակշռում է արդյունաբերության բաժինը (67,8 և 54,6 տոկոս), փոքր է գյուղատնտեսության տեսակարար կշիռը (13 և 18,5 տոկոս), որպես ժողովրդատնտեսական խոշոր ճյուղեր ձևավորվել են կապիտալ շինարարությունը (9,7 և 10,8 տոկոս), տրանսպորտը և կապը (շուրջ 3—4 տոկոս): Արդյունաբերության ճյուղում գերակշռում են մեքենաշինության (32,5 տոկոս), թեթև արդյունաբերության (23,2 տոկոս), սննդի արդյունաբերության՝ (16,7 տոկոս) տեսակարար կշիռները: Բերված տվյալները վկայում են հանրապետության ինդուստրիալ զարգացման բարձր մակարդակի մասին: Դա ապացուցվում է նաև արտադրանքի արտահանման ու ներմուծման կառուցվածքով: Այսպես, ՀԽՍՀ հասարակական արդյունքի միջճյուղային հաշվեկշիռների (1986—88 թթ.) տվյալներով, արտահանվող արտադրանքի գերակշռող մասը՝ 99,5 տոկոսը, արդյունաբերական է, 0,4 տոկոսը՝ գյուղատնտեսական: Ներմուծվում է նույնպես մեծ մասամբ արդյունաբերական արտադրանք (95—96 տոկոս), փոքր է գյուղատնտեսության բաժինը (շուրջ 4 տոկոս): Ուշագրավ է, որ արտահանվում է հիմնականում մեքենաշինական՝ 22—41 տոկոս, թեթև՝ 23—40 տոկոս, սննդի՝ 9—16 տոկոս, քիմիական՝ 8—10 տոկոս արդյունաբերության արտադրանք: Մեքենաշինությունն արտահանում է էլեկտրատեխնիկական արտադրանք՝ 24,5 տոկոս, սարքեր՝ 24 տոկոս, ռադիոէլեկտրոնային սարքավորումներ՝ 13 տոկոս, որոնց տեսակարար կշիռը արտահանվող մեքենաշինական արտադրանքում կազմում է 61,5 տոկոս: Ակնհայտորեն առաջադիմական է արտահանման կառուցվածքը: Սակայն վերջին տարիներին արտահանվող արտադրանքի ծավալում նվազում է մեքենաշինության բաժինը, աճում սննդի և թեթև արդյունաբերության տեսակարար կշիռը: Բացարձակ արտահայտությամբ 1987 թ., 1986-ի համեմատությամբ, արտահանվող մեքենաշինական արտադրանքի ծավալը կրճատվել է 1268, իսկ 1988-ին՝ 1450 մլն ռուբլով: Եթե 1988 թ. ավերիչ երկրաշարժի և այլ պատճառներով կարելի է համարել ոչ բնութագրական, ապա միտումը ընդհանուր առմամբ անհանգստացնող է և, անշուշտ, այն պետք է հաղթահարել:

Ներմուծվող արտադրանքի ընդհանուր ծավալում գերակշռում է մեքենաշինության, թեթև, սննդի, վառելիքային արդյունաբերության արտադրանքը: Ընդ որում, վերջինիս ողջ ծավալի 70 տոկոսը կազմում է նավթավերամշակման արտադրանքը, 26 տոկոսը՝ գազը և շուրջ 4 տոկոսը՝ ածուխը: Արտադրանքի ներմուծման ու արտահանման ծավալի և կառուցվածքի փոփոխությունների համադրումը հանրապետությունում այդ արտադրատեսակի սպառման ողջ ծավալի և ռեսուրսապարունակության հետ բնութագրում է կառուցվածքային քաղաքականության հիմնավորվածության աստիճանը: Այս հայեցակետից հանրապետության միջճյուղային հաշվեկշռի (1987 թ.) տվյալներով դիտարկենք ներմուծման նշանակությունը արտադրանքի որոշ կարևորագույն տեսակների սպառման ծավալում: Ներմուծվող արտադրանքի տեսակարար կշիռը դրա առանձին տեսակների գծով բավականաչափ զգալի է: Ամբողջությամբ ներմուծվում է նավթավերամշակման, գազի արդյունաբերության արտադրատեսակների, ածխի պահանջվող ծավալը, ընդ որում ավտոտրանսպորտային վառելիքները կազմում են ներմուծվող արտադրանքի 10—34 տոկոսը: Ալրաղաց և ձավարեղենի արտադրանքի սպառման ծավալում ներմուծման բաժինը հասնում է 30 տոկոսի, մսի և մսամթերքինը՝ 21, կաթի և կաթնամթերքինը՝ 47, բուսաբուծական մթերքներինը՝ 12 տոկոս:

Անշուշտ, այն արտադրատեսակները, որոնց արտադրության հանքահումքային բազա հանրապետությունում չկա, պետք է ներմուծվեն: Չկա երկիր, որ ունենա բոլոր անհրաժեշտ ռեսուրսները: Դրա համար էլ ստեղծվում են տնտեսական կապեր, իրականացվում է փոխշահավետ առևտուր: Բայց առանձին կենսամիջոցների պահանջվող չափով արտադրությունն օբյեկտիվորեն անհրաժեշտ է, հատկապես, եթե այդ պայմանները կարող են ստեղծվել: Դա վերաբերում է հատկապես անասնաբուծական և բուսաբուծական մթերքներին: Իսկ գյուղատնտեսության ինտենսիվացման ժամանակակից մեթոդները այդպիսի հնարավորություններ կարող են ընձեռել:

Պարզապես կառուցվածքային քաղաքականությունը մշակելիս վերը բնութագրված ելակետային չափանիշը հաշվի չի առնվել: Դա առավել ակնհայտ կդառնա, եթե դիտարկենք արտադրանքի այլ տեսակներ, ինչպես նաև սոցիալական զարգացման առանձին բնագավառներ (առողջապահություն, կոմունալ բնակարանային տնտեսություն, բնակչության կենցաղային սպասարկում) կամ ծառայությունների ոլորտը (առևտուր, հասարակական սնունդ, տրանսպորտ և այլն):

Դիտարկելով արտահանման կառուցվածքը, հարկ է ընդգծել, որ գրեթե աննշան է արտասահմանյան երկրներ արտահանվող արտադրանքի տեսակարար կշիռը (շուրջ 1,7 տոկոս): Ընդ որում, առավելապես արտահանվում է թեթև և քիմիական արդյունաբերության, մեքենաշինության, սննդի արդյունաբերության արտադրանք: Իսկ ներմուծումը արտասահմանյան երկրներից ավելի քան 11 անգամ գերազանցում է արտահանմանը: Այս երևույթը ևս դրականորեն չի բնութագրում հանրապետությունում իրականացվող կառուցվածքային, տեխնիկական և տնտեսական կապերի քաղաքականությունը: Ռեգիոնալ տնտհաշվարկի պայմաններում, երբ հարկ կլինի ստեղծել վալյուտային պաշարներ, ակտիվացնել արտաքին տնտեսական կապերը, վիճակը պետք է փոխվի, ստեղծվեն նրանց նյութաարտադրական իրական նախադրյալներ:

Այսօրինակ վերլուծությունը և կառուցվածքային քաղաքականության գնահատումը միաժամանակ հնարավորություն են ընձեռում բացահայտել այդ քաղաքականության վերակառուցման ուղղությունները: Մասնավորապես, ճյուղային կառուցվածքի առումով առավել առաջնահերթ են.

— ժամանակակից գիտատար արտադրությունների բարձր տեմպերով զարգացումը, որը հնարավորություն կընձեռի ընդլայնել արտահանումը, կստեղծվեն նախադրյալներ համատեղ ձեռնարկությունների կազմակերպման և արտաքին շուկա դուրս գալու համար.

— գյուղատնտեսության ներճյուղային կառուցվածքի վերակառուցումն ու ինտենսիվ զարգացումն այն հաշվով, որ առավելագույն չափով ապահովվի հանրապետության բնակչության պահանջը պարենի նկատմամբ.

— ենթակառուցվածքային ճյուղերի արագ զարգացումը, ավելի հուսալի տրանսպորտատնտեսական հանգույցների և կապերի ստեղծումը.

— ծառայությունների և սոցիալական ոլորտի համապատասխանեցումը ժամանակակից պահանջներին:

Ժողովրդական տնտեսության ճյուղային կառուցվածքը ձևավորելու հիմնական լծակը կառավարման արդի համակարգի պայմաններում կապիտալ ներդրումների ըստ ճյուղերի և ռեգիոնների բաշխումն է: Դրանց կենտրոնացված բաշխման պայմաններում այդ կառուցվածքը միութենական հանրապետություններում ձևավորվում է կենտրոնական պլանային մարմինների և մինիստրությունների հայեցողությամբ, իսկ հանրապետությունների ներսում՝ կառավարման հանրապետական մարմինների ցանկությամբ: Ահա թե ինչու առանձին ռեգիոններում միանգամայն տարբեր է ճյուղային կառուցվածքի բնույթը: Այս իմաստով խիստ ուշագրավ է վիճակը Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզում: Մեր երկրում հազիվ թե գտնվի մի մարզ, որն ունենա ժողովրդական տնտեսության այնպիսի խղճուկ ճյուղային կառուցվածք, ինչպիսին այդ մարզինն է: Իրենց ինտերնացիոնալիստ հորջորջող և սեփական ժողովրդին հումանիստական ավանդույթներ վերագրող Ադրբեջանի կառավարողների «ջանքերով» ներկայումս՝ խորհրդային իշխանության 73-րդ տարում, ԼՂԻՄ-ում փաստորեն չկա ժամանակակից արդյունաբերություն, խիստ ցածր է գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի, բնակչության սպասարկման ոլորտի ճյուղերի զարգացման մակարդակը: Զավեշտական է, բայց փաստ, որ մարզի մեքենաշինության դեմքը ներկայացվում է... ցերեկային լուսավորման լամպերի արմատուրայով, շինարարական նյութերի արդյունաբերությունը՝ կրով: Մարզի արդյունաբերությունը թողարկում է նաև անհիշելի ժամանակներից ավանդական դարձած մետաքսը, պանիրը, յուղը, գինին.. Իսկ ու՞ր են ժամանակակից արդյունաբերության ճյուղերը: Չէ

որ դրանք կան Ադրբեջանի մյուս քաղաքներում և շրջաններում: Ղարաբաղը չունի նույնիսկ շինարարական կոնստրուկցիաների և այլ նյութերի, պահածոների, հրուշակեղենի, հանքային ջրերի, կենսապահովման շատ այլ առարկաների սեփական արտադրություն: Առավել անմխիթար է վիճակը մյուս ճյուղերում: Կապիտալ ներդրումների ծավալը 1987 թ., 1985-ի համեմատությամբ, կազմել է 85, հիմնական փոնդերի գործարկումը՝ 73 տոկոս, այսինքն՝ նվազել է, մանրածախ ապրանքաշրջանառությունն աճել է 3, բնակչության կենցաղային սպասարկման ծավալը՝ 15 տոկոսով, հիվանդանոցային մահճակալների թիվը չի աճել, իսկ նույն ցուցանիշները արդեն ադրբեջանացված Նախիջևանի ինքնավար հանրապետությունում ավելացել են համապատասխանաբար՝ 8, 8, 9, 39, 18 տոկոսով:

Անկասկած, Արցախում կան արդյունաբերության ժամանակակից ճյուղերի զարգացման անհրաժեշտ նախադրյալներ, ամենից առաջ հումքային ռեսուրսներ (բազմամետաղային հանքավայրեր, քարատեսակներ, հանքային ջրեր և այլն), մարզի համար բնորոշ բարձր ինտելեկտուալ պոտենցիալ: Պակասում է միայն Ադրբեջանի նախկին և նոր ղեկավարների ցանկությունը: Դեռ ավելին, նրանք վարել և վարում են Արցախում նոր աշխատանքային տեղեր չստեղծելու, մարզում հայազգի բարձրորակ ինժեներատեխնիկական, գիտական կադրեր չունենալու, Նախիջևանի օրինակով այն հայազրկելու քաղաքականություն:

Այս աղաղակող իրողությունը մեկ անգամ ևս ապացուցում է ազգային քաղաքականության՝ ազգերի ազատ ինքնորոշման հիմնարար սկզբունքով վերակառուցելու, մասնավորապես նաև ազգային-պետական կազմավորումներին տնտեսական ինքնուրույնություն ընձեռելու, ռեգիոնալ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման փոխադրելու անհրաժեշտությունը: Ինքնաֆինանսավորման պայմաններում սահմանափակվում է կենտրոնացված ֆինանսավորումը, և այդպիսով կառուցվածքային քաղաքականությունն իրականացնում են հանրապետական և տեղական մարմինները՝ արտադրողների ասոցիացիաների, ձեռնարկությունների ակտիվ մասնակցությամբ: Տնտեսական ինքնուրույնության պայմաններում առկա բոլոր ռեսուրսների ռացիոնալ օգտագործման հիման վրա, հաշվի առնելով նաև փոխշահավետ ու ակտիվ տնտեսական կապերը, հարաբերականորեն ինքնուրույն կլինի ընդլայնված վերարտադրությունն իր բոլոր փուլերով, որի առաջնահերթ խնդիրներն են ռեգիոնի բնակչության ապահովումը կենսամիջոցներով, արտադրողական ուժերի բարձր տեմպերով զարգացումը:

Կառուցվածքային քաղաքականության մյուս կարևոր ուղղությունը վերաբերում է հասարակական արդյունքի նյութաիրային կառուցվածքին՝ արտադրության միջոցների և սպառման առարկաների արտադրության հարաբերակցությանը:

Այն բնութագրում է արտադրության ընդլայնման ու բնակչության կենսամակարդակի ապահովման հնարավորությունները և, անշուշտ, շատ կարևոր է ինքնավերարտադրության պոտենցիալը արտահայտելու համար: Հանրապետության միջճյուղային հաշվեկշիռների տվյալներով արտադրության միջոցների (1-ին ստորաբաժանում) և սպառման առարկաների արտադրության (2-րդ ստորաբաժանում) հարաբերակցությունը կայուն կամ բնութագրական միտումներ չունի: Առաջին ստորաբաժանման տեսակարար կշիռը տատանվում է 52—65, երկրորդ ստորաբաժանման արտադրանքինը՝ 35—48 տոկոսի սահմաններում: Ընդ որում, ըստ տարիների շեղումները խիստ զգալի են: Նման պատկերը հիմնականում բնորոշ է արդյունաբերության «Ա» և «Բ» խմբերի հարաբերակցությանը: Թերևս նկատելի է «Ա» խմբի տեսակարար կշռի նվազումը, որը ներկայումս կազմում է 63 տոկոս: Սակայն, ընդհանուր առմամբ գլխավորն այն է, որ ռեգիոնի առումով վերարտադրության նյութաիրային համամասնությունների կարգավորումը չի կարևորվել: Տնտեսական ինքնուրույնության պայմաններում պետական պատվերների, տնտեսական զանազան լծակների միջոցով հարկ կլինի անհրաժեշտ ուշադրություն բևեռել ընդլայնված վերարտադրության ապահովման համար կարևոր այդ համամասնությանը:

Առանձին հետաքրքրություն է ներկայացնում հասարակական արդյունքի արժեքային կառուցվածքը: Հանրապետության հասարակական ամբողջական արդյունքի արժեքային կառուցվածքը, ըստ հաշվետու միջճյուղային հաշվեկշիռների, բնութագրվում է հետևյալ տվյալներով. փոխհատուցման փոնդի բաժինը կազմում է 58,6, անհրաժեշտ արդյունքինը՝ 21,7, հավելյալ արդյունքինը՝ 19,7 տոկոս: Տիրապետող միտումն այն է, որ փոխհատուցման փոնդի բաժինը հասարակական ամբողջական արդյունքում աճում է: Անհրաժեշտ է ընդգծել, որ այդ միտումը պայմանավորված է



գիտատեխնիկական առաջադիմության շնորհիվ ամբողջական աշխատանքի կազմում կենդանի աշխատանքի համեմատությամբ առարկայացած աշխատանքի արագ աճով: Այդպիսով, այն ունի օբյեկտիվ հիմք: Այդ միտումի դրսևորմանը հակազդում է արտադրանքի նյութատարության կրճատումը:

Ճյուղային կառուցվածքային փոփոխությունները ներազդում են հասարակական արդյունքի արժեքային կառուցվածքի վրա, որը բացատրվում է առանձին ճյուղերի արտադրության ծախսերում նյութական ծախսերի տեսակարար կշռի տարբերություններով:

Անվիճելի է ազգային եկամտի կազմում հավելյալ արդյունքի տեսակարար կշռի արագ աճի անհրաժեշտությունը: Բացի այդ, դրա տեսակարար կշռի ավելացումը մասամբ էլ պետք է պայմանավորվի արդյունաբերության արագ աճով: Արդյունաբերության զուտ արտադրանքի ծավալում հավելյալ արդյունքի բաժինը կազմում է շուրջ 63—66 տոկոս, շինարարության և գյուղատնտեսության ճյուղերում՝ 33—35 և 13—15, իսկ նյութական արտադրության մեջ՝ 48—50 տոկոս: Սակայն արտադրության ցածր արդյունավետության, աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի նվազման պայմաններում այդ միտումը գործնականում աննշան է:

Արժեքային կարևոր համամասնություններից է սպառման և կուտակման փոնդերի հարաբերակցությունը, որը վճռական նշանակություն ունի թե՛ ընդլայնված վերարտադրության ապահովման, թե՛ սոցիալական հարցերի լուծման համար: Այդ իմաստով այն կառուցվածքային քաղաքականության առաջնահերթ խնդիրներից է: Կառավարման խիստ կենտրոնացված վարչահրամայական համակարգի պայմաններում այս համամասնությունը ռեգիոնալ առումով նույնպես չէր կարևորվում: Այն ձևավորվում էր տարերայնորեն, ավելի ճշգրիտ՝ կախված կենտրոնից հատկացվող ֆինանսավորման չափից: Ընդ որում, ազգային եկամտի արտադրության նյութաիրային կառուցվածքը, փաստորեն, օգտագործման կազմի համար որոշիչ նշանակություն չունի, մինչդեռ տեսականորեն արտադրությունը պետք է պայմանավորի սպառումը: Այստեղ վճռական դեր է կատարում նաև միութենական հանրապետությունների էկոնոմիկայի այսպես կոչված բաց բնույթը, երբ ներմուծման ու արտահանման ծավալը կարող է հասնել հասարակական արդյունքի 1/3-ին:

ՀԽՍՀ ազգային եկամտի օգտագործման կառուցվածքի վերլուծությունից դժվար է նկատել որևէ օրինաչափություն սպառման և կուտակման փոնդերի հարաբերակցության դինամիկայում, որը վկայում է այդ համամասնության ձևավորման տարերային բնույթի մասին:

Անշուշտ, ինքնաֆինանսավորման պայմաններում այդ հարաբերակցության վրա կուժեղանա էկոնոմիկայի ինտենսիվացման ազդեցությունը, որը կհանգեցնի կուտակման նորմայի նվազմանը, սպառման ռեսուրսների աճին:

Տնտեսական ինքնուրույնության, այսինքն՝ ռեգիոնալ տնտհաշվարկի պայմաններում սպառման և կուտակման հարաբերակցությունը կազմավորվելու է գլխավորապես հանրապետությունում՝ նրա տարածքում գտնվող ձեռնարկությունների ու կազմակերպությունների, ինչպես նաև սոցիալական զարգացման շահերին համապատասխան: Կենտրոնի դերը այս հարցում կսահմանափակվի միութենական նշանակության պետական պատվերներին համապատասխանող լիմիտների չափով: Լայն առումով ավելի վճռական նշանակություն կստանա ինքնավերարտադրության ապահովման նպատակով հանրապետության ժողովրդական տնտեսության ճյուղային կազմի վերակառուցումը:

Արտադրության միջոցների նկատմամբ սեփականության իրացման ձևերի բազմազանության պայմաններում նոր երանգ է ստանում արտադրության սոցիալական կառուցվածքը: Փոխվում է հասարակական արդյունքում պետական տնտեսության տեսակարար կշռի արագ աճի անառարկելի և գրեթե օրինաչափ համարված միտումը: Նոր պայմաններում ավելանում է կոոպերատիվ ձեռնարկությունների, անհատական աշխատանքային գործունեության, բաժնետիրական ընկերությունների, վարձակալական կազմակերպությունների նշանակությունը: Արդեն 1988 թ. անհատական աշխատանքային գործունեության շնորհիվ ստեղծված արդյունքի բաժինը ամբողջ նյութական արտադրության ծավալում կազմել է 0,6 տոկոս: Բավականաչափ զգալի է առանձին ճյուղերի արտադրության ծավալում կոոպերատիվ ձեռնարկությունների բաժինը. արդյունաբերության մեջ այն կազմում է 1,8, շինարարության ճյու-

ղում՝ 4,3, առևտրում ու հասարակական սննդում՝ 33,5, այդ թվում՝ միայն կոոպերատիվներինը՝ 1,7, մթերումների ճյուղում՝ 20,1 տոկոս: Բոլոր նախադրյալները կան առաջիկայում կոլեկտիվ սեփականության և անհատական աշխատանքային գործունեության հիման վրա թողարկվող արտադրանքի ծավալը ավելացնելու, պետական ձեռնարկությունների ու դրանց միջև մրցակցությունն ապահովելու, որն էլ կհանդիսանա արտադրության զարգացման, թողարկվող արտադրանքի որակի բարձրացման կարևոր գործոն:

Հասարակական արդյունքի տարածքային կառուցվածքը բնութագրում է առանձին շրջանների բաժինը այդ արդյունքում և դրանց տնտեսական ու սոցիալական զարգացման համաչափությունը: Այս բնագավառում առկա թերությունները ակնհայտ են: Կենտրոնացված կառավարման պայմաններում միութենական մինիստրություններին տնտեսապես ձեռնտու է տեղադրել նոր արտադրություններ կամ ընդլայնել դրանք այնտեղ, որտեղ արդեն գործում է արտադրության համար անհրաժեշտ ենթակառուցվածք: Դա, անշուշտ, ձեռնտու է նաև հանրապետական մինիստրություններին: Ահա թե ինչու հանրապետության արտադրողական ուժերի գերակշռող մասը տեղաբաշխված է սահմանափակ թվով շրջաններում ու քաղաքներում, որի հանգեցրել է տարածքային անհամամասնությունների: Տնտեսական ինքնուրույնության պայմաններում դրանց հաղթահարումը և շրջանների ու քաղաքների համաչափ զարգացման ապահովումը, հաշվի առնելով աշխատանքային ու բնական ռեսուրսների համալիր ու արդյունավետ օգտագործման անհրաժեշտությունը, ստանում է սոցիալ-տնտեսական հսկայական նշանակություն:

Միաժամանակ, այդ խնդրի լուծման համար ստեղծվում են համապատասխան նախադրյալներ: Նախ, ինքնավերարտադրության և բնակչությանը կենսամիջոցներով ապահովելու համար մեծանում է յուրաքանչյուր միավոր ռեսուրսի նշանակությունը, արժեքավորվում այն: Երկրորդ, տնտեսավարման նոր ձևերը նպաստում են շրջանառության մեջ դնելու բոլոր ռեսուրսները, անկախ դրանց գտնվելու վայրից: Երրորդ, ինքնաֆինանսավորման պայմաններում ձեռնարկությունները, շրջանները ստանում են արտադրողական ուժերի զարգացման սեփական լծակներ՝ ֆինանսական ռեսուրսներ:

Այսպիսով, ռեգիոնալ տնտհաշվարկը հնարավորություններ է ընձեռում ժողովրդական տնտեսության կառուցվածքի կատարելագործման, ինքնուրույն, արդյունավետ և տնտեսապես հիմնավորված ստրուկտուրային քաղաքականության իրականացման համար:

# ԻՆՉՊԵ՞Ս ԵՍ ԱՊՐՈՒՄ, ԳՅՈՒՂԱԲՆԱԿ

**Ն. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ**

Դիպուկ է ասված. «Գյուղացու ապրուստով են դատում վերակառուցման մասին»: Այո, վերակառուցումն առաջ կընթանա, եթե գյուղը ոտքի կանգնի: Բայց չէ որ նախկինում էլ հսկայական գումարներ, նյութական միջոցներ են հատկացվել գյուղի զարգացմանը, մինչդեռ պատշաճ հատույց չկա: Ցավն այն է, որ այդ միջոցների առյուծի բաժինը ծախսվել է ինչի վրա ասես, բայց ոչ գյուղի աշխատավորի համար: Մտնում ես որևէ անասնապահական համալիր և զարմանում, թե այդտեղ որքան հիմնավորապես են փորձել կանխատեսել կարմիր կովիկի բոլոր քմահաճույքները, այդտեղ կան թե՛ ինքնաբեռնիչ, թե՛ օդափոխիչ հարմարանք և շատ այլ բաներ: Այո, միայն թե ծախսումները շատ հաճախ ոչ մի արդյունք չեն տվել: Կամ չի գործում այդ ամբողջ տեխնիկան, կամ էլ չկան այդ համալիրը սպասարկողներ. վետերանները թոշակի են անցնում, իսկ երիտասարդները հեռվից են շրջանցում ֆերման: Իսկ այդ ամենի պատճառն այն է, որ անասնապահի համար նույնիսկ տարրական պայմաններ չկան: Այո, գյուղի համար կադրերի պրոբլեմն ամենագլխավորն է:

Գյուղական բնակչության ընդհանուր թվակազմում նրա բաժինը տարեցտարի փոքրանում է, չնայած այն բանին, որ գյուղական շրջաններում ծննդաբերությունն ավելի բարձր է (1988 թ. 32 տոկոս), քան քաղաքային բնակավայրերում: Դա բացատրվում է բնակչության տեղափոխումով գյուղից քաղաք, որտեղ առայժմ ավելի լավ կենսապայմաններ են ստեղծված: Չէ որ քաղաքի և գյուղի համեմատումը, ընդհանուր հատկանիշների հետ մեկտեղ, բացահայտում է նաև ինչպես նյութատեխնիկական պայմանների, այնպես էլ դրանց հիման վրա ձևավորվող բնակչության ապրելակերպի առանձնահատկությունների՝ նյութական բարեկեցության և կուլտուրայի մակարդակի բնույթի, կենցաղի ու տեղաբաշխման կազմակերպման, կապի ու տրանսպորտի միջոցներով ապահովման առումով: Այդ տարբերությունները պայմանավորված են ինչպես քաղաքի ու գյուղի պատմական զարգացմամբ, այնպես էլ նյութական և հոգևոր միջոցների ու հնարավորությունների դեռևս գոյություն ունեցող անհավասարաչափ բաշխմամբ:

Քաղաքի և գյուղի միջև աշխատանքի հասարակական բաժանումը, արդյունաբերության ու գյուղատնտեսության յուրահատկությունը ըստ էության բնորոշում են նրանց բնակիչների ապրելակերպը: Քաղաքային ապրելակերպին հատկանշական են առանձնակի շարժունակությունը, ինտենսիվությունը և տեմպերի արագությունը գործունեության բոլոր ոլորտներում՝ արդյունաբերության մեջ, հասարակական ու մշակութակենցաղային ասպարեզում:

Գյուղի կյանքի մասին լիակատար պատկերացում է տալիս արտադրական բնագավառին առնչվող նրա որակական կողմը: Գյուղին բնորոշ է նրա բնակիչների զբաղվածությունն առավելապես գյուղատնտեսական աշխատանքով, թեև այնտեղ արդյունաբերության, առևտրի, տրանսպորտի և մշակույթի բնագավառներում աշխատող մարդկանց թիվը մեծանում է: Հողը մնում է գյուղատնտեսական աշխատանքի և ամբողջ կյանքի հիմնական պայմանը, կապվածությունը նրան՝ որպես գյուղի բնակչության կենսագործունեության հիմքը:

Գյուղի սոցիալ-տնտեսական կերպարանքն անընդհատ ձևափոխվում է, նրա բնակչության կյանքի այս կամ այն կողմը մոտենում քաղաքային ստանդարտներին՝ լինի դա արտադրության նյութական բազային ու կենցաղին, գյուղատնտեսական աշխատանքի աստիճանաբար արդյունաբերականի վերափոխվելուն, թե մարդկանց բարեկեցության բարձրացմանն առնչվող վերափոխումներին: Էականորեն փոխվում է

---

*ԱԼԵՔՍԱՆՅԱՆ ՆԱԻՐԱ ԻՎԱՆԻ— ՀԽՍՀ վիճակագրական տնտեսագետ*

գյուղական բնակչության սոցիալական կազմը: Անհերև են բանվորների ու ծառայողների բաժնի մեծացումը ի հաշիվ կոլտնտեսականների: Դա հանրապետությունում ագրոարդյունաբերական համալիրի և կոոպերատիվների ստեղծման, արդյունաբերական բնույթի կենցաղային սպասարկման աճի, արդյունաբերական ձեռնարկությունների մասնաճյուղերի կազմակերպման արգասիքն է, որը հնարավորություն է ընձեռում գյուղատնտեսական աշխատողների բեռնվածությունը տարվա ընթացքում մոտեցնել քաղաքային բնակչության տարեկան զբաղվածության մակարդակին:

Քաղաքի և գյուղի բնակչության բարեկեցության գնահատման ու շերտավորման ընդհանուր պայմաններից են արտադրական հարաբերությունների մակարդակը և արտադրողական ուժերի զարգացման աստիճանը: Այստեղ են ներառնված թե հողի սեփականության, թե վարձակալական հարաբերությունների և թե հիմնական ֆոնդերի սեփականության բազմազան ձևերի պրոբլեմները: Կարևոր է նաև աշխատանքի արտադրողականության և նրա տնտեսական արդյունավետության որոշիչ նշանակությունը:

Նոր տեխնիկայով, ավտոմատիկայով աշխատելը, քիմիական միջոցների օգտագործումը գյուղացիների աշխատանքը դարձնում են առավել արտադրողական արդյունաբերական աշխատանքի տարատեսակը, հանգեցնում գյուղական աշխատանքի և նրա ավանդական ըմբռնման ձևափոխման: Այսօր կոլեկտիվ և պետական տնտեսություններում կան մոտավորապես 160 մասնագիտությունների աշխատողներ: Արդի իրավիճակը էականորեն տարբերվում է 30—40-ական թվականների իրադրությունից, երբ գյուղում գերակշռում էր «ունիվերսալ կոլտնտեսականը», ցածր որակավորումով տարաբանվորը: Գյուղատնտեսությունն արդեն արդյունաբերական տիպի 60 մասնագիտության աշխատողների պահանջմունք ունի: Նոր մասնագիտությունների երևան գալու հետ փոխվում են «հին» կթվորների, խոզապահների, թռչնապահների մասնագիտությունները:

Աշխատանքի մասնագիտական բաժանման խորացման շնորհիվ կատարվում է մասնագիտություն չունեցող աշխատողների բազմաքանակ խավի կրճատում, իսկ մեխանիզատորների բաժինը մեծանում է: Հետպատերազմյան ժամանակամիջոցում նրանց թիվն ավելի քան կրկնապատկվել է: Այժմ կոլեկտիվ և պետական տնտեսության յուրաքանչյուր հինգերորդ աշխատողը մեխանիզատոր է:

Գյուղի բնակիչների արտադրական գործունեության տեխնիկական մակարդակի բարձրացման կարևորագույն ուղին հողագործության և անասնապահության ոլորտներում աշխատանքների մեքենայացումն է, գյուղատնտեսության տարբեր ճյուղերի տեխնիկական զինվածության և էլեկտրիֆիկացման ուժեղացումը:

Անշուշտ, մեր հանրապետությունում գյուղատնտեսական աշխատանքը թե արգասավորության և թե արտադրողականության առումով զգալիորեն հետ է մնում արդյունաբերականից: Այսպես, մոտ տասը տարի առաջ, XI հնգամյակում արդյունաբերության մեջ աշխատանքի արդյունավետության աճի տեմպը կազմել է 115,5, մինչդեռ գյուղատնտեսության մեջ 101,8 տոկոս, 1988 թվականին համապատասխանաբար՝ 106,9 և 100,9 տոկոս: Գյուղատնտեսական աշխատանքի համեմատաբար ցածր արտադրողականության և նրա դանդաղ աճի պատճառն ագրոարդյունաբերական համալիրի նյութատեխնիկական բազայի հետ մնալն է: Այդ ոլորտում հիմնական ֆոնդերի նորացման գործակիցը վերջին հնգամյակում նկատելիորեն նվազեց: 1987 թվականին գյուղատնտեսական հիմնական ֆոնդերը կազմում էին 2,6 մլն ռուբլի, 100 հեկտար գյուղատնտեսական հողահանդակների հաշվով ֆոնդապահովվածությունը՝ 198,2 հազ. ռուբլի, ընդ որում մեկ աշխատողի հաշվով աշխատանքի ֆոնդազինվածությունը 1980 թվականի համեմատությամբ կրկնակի ավելի արագ աճեց, քան արդյունաբերության մեջ և կազմեց 9 հազ. ռուբլի, որը 48,5 տոկոսով ցածր է, քան արդյունաբերությունում: Սակայն գյուղատնտեսության մեջ աշխատանքի ֆոնդազինվածությունը չապահովեց ֆոնդահատույցի համապատասխան աճ, որի հետևանքով այդ ցուցանիշը վերջին տարիներին նվազում է:

Արտադրության նյութատեխնիկական բազայի հետ մնալու պատճառով ձեռքի աշխատանքով զբաղվող աշխատողների թիվն ավելի մեծ է գյուղատնտեսության, քան արդյունաբերության մեջ: Այսպես, արդյունաբերության ոլորտում աշխատանքը ձեռքով է կատարում աշխատողների 40,1, մինչդեռ գյուղատնտեսության մեջ՝ մոտ 92 տոկոսը, ընդ որում հանրապետության պետական տնտեսություններում մեքենայացման մակարդակն ավելի ցածր է, քան կոլտնտեսություններում:

Արտադրողականությանը և աշխատանքի վարձատրությանը ներազդող կարևոր



գործոն է բանվորական ուժի որակավորման մակարդակը: Այսպես, մինչև XII հնգամյակի սկիզբը քաղաքին բարձրագույն ու միջնակարգ կրթությամբ 25 անգամ ավելի շատ մարդ էր ընկնում, քան գյուղին:

Աշխատանքի արտադրողականության և որակավորման մակարդակի հետ մնալը գյուղում տնտեսական հարաբերությունների անկատարության և նյութական թույլ շահագրգռվածության արդյունք է:

Այդուհանդերձ, հանրապետությունում շարունակվում է քաղաքի և գյուղի բանվորների ու ծառայողների աշխատանքի վարձատրության մերձեցումը: Դրան նպաստում է այն, որ գյուղի աշխատողների աշխատավարձն աճում է առաջանցիկ տեմպերով: Եթե XII հնգամյակում այդ աճի միջին տարեկան տեմպերը կազմել էին արդյունաբերությունում 102,7, իսկ գյուղատնտեսության մեջ՝ 103,1 տոկոս, ապա 1988 թվականին, 1985 թվականի համեմատությամբ, համապատասխանաբար՝ 101,8 և 107,4 տոկոս: Ինչպես տեսնում ենք, գյուղի և քաղաքի աշխատողների աշխատանքի վարձատրության մերձեցման միտումն ընթացիկ հնգամյակում ուժեղացել է:

Բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների կենսամակարդակների էական տարբերությունները բնորոշում են ռեալ եկամուտները: Ընթացիկ հնգամյակում դրանց աճի տեմպերը դանդաղելու պայմաններում, ենթադրվող դիրքերը ձեռք բերվեցին սոսկ 65 տոկոսով, թեև 1988 թվականին դրանք աճել էին: Բնակչության մեկ շնչին ընկնող դրանց աճի տեմպը կազմեց կոլտնտեսականների մոտ 106,2, բանվորների ու ծառայողների մոտ՝ 102,5 տոկոս:

Սոցիալական խմբերի տեսանկյունից ռեալ եկամուտների վերլուծությունը ցույց է տալիս, որ կոլտնտեսականների եկամուտների մակարդակը ցածր է եղել: Բայց այդ խզումը կրճատման միտում ուներ: Այսպես, բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները 1985 թ. կոլտնտեսականների մոտ եղել են 118 ռուբլի, բանվորների ու ծառայողների եկամուտներից ցածր, իսկ արդեն 1988 թ. դրանք գերազանցել են 48,5 ռուբլով և բնակչության մեկ շնչի հաշվով կազմել 1351,7 ռուբլի:

Ներկայումս կոլտնտեսականների ռեալ եկամուտներում դրամական եկամուտների բաժինը կազմում է 75,3 տոկոս, որը 6,4 տոկոսով ցածր է բանվորների ու ծառայողների տվյալ եկամուտներից, սակայն դրանց աճի տեմպերը որոշ չափով թուլանում են. կոլտնտեսականների մոտ՝ որպես բնամթերք ստացվող եկամուտների ավելացման, իսկ բանվորների ու ծառայողների մոտ՝ ծառայությունների ոլորտի զարգացման հաշվին:

Հիմնական սոցիալական խմբերի եկամուտները միմյանցից տարբերվում են դրանց ձևավորման առումով: Եթե բանվորների ու ծառայողների համար եկամուտների հիմնական աղբյուր են աշխատանքի վարձատրության ֆոնդերը (85,7 տոկոս), ապա կոլտնտեսականների համար՝ անձնական օժանդակ տնտեսությունից (43 տոկոս) և կոլտնտեսությունների հանրային տնտեսությունից (37 տոկոս) ստացվող եկամուտները: Էականորեն տարբեր են նաև քաղաքի ու գյուղի բնակչության անձնական սպառման պարենամթերքի ձեռքբերման ոլորտները: Այսպես, քաղաքային բնակչության համար պարենային ապրանքների սպառման ոլորտում պետական ու կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառության բաժինը կազմում է 82,7, գյուղականի համար՝ 69,8 տոկոս, իսկ ոչ պարենայինների սպառման ոլորտում՝ համապատասխանաբար՝ 91,1 և 79,7 տոկոս:

Անձնական սպառման անն զգալիորեն բնորոշվում է սննդամթերքների սպառման կառուցվածքի անով ու կատարելագործմամբ: Կոլտնտեսականների ընտանիքների սննդառության ծախսերի բաժինը նվազել է՝ 1980 թ. 39,5 տոկոսից 1988 թ. կազմելով 37,6 տոկոս: Կոլտնտեսականների ընտանիքներում մսի և մսամթերքների, բուսական յուղի, ձկան և ձկնամթերքների սպառումը նկատելիորեն սակավ է, քան բանվորների ու ծառայողների ընտանիքներում: Կոլտնտեսականների ընտանիքներում ավելի շատ հաց և հացամթերքներ, կարտոֆիլ, միրգ և հատապտուղներ, ձու են օգտագործում: Շաքարի, բանջարեղենի և բանջարաբոստանային կուլտուրաների օգտագործումը կոլտնտեսականների և բանվորների ընտանիքներում գրեթե հավասարաչափ է և մոտենում է հանձնարարվող օրաբաժիններին, օգտագործվող սննդամթերքների տարբեր տեսականիով է պայմանավորված նաև բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների օրաբաժնի սննդանյութերի ու էներգիայի տարբերությունը: Կոլտնտեսականների օրաբաժինն ավելի մեծ է, քան բանվորներինն ու ծառայողներինը: Դա բացատրվում է հիմնականում հացի և հացամթերքների սպառման բարձր նորմայով, որի հաշվին 440,8 կկա լրացուցիչ էներգիա է ստացվել բան-

վորների ու ծառայողների և 357,2 կկա պահանջվող օրաբաժնի համեմատությամբ: Հենց դրանով՝ հացամթերքների սպառման բարձր նորմայով է բացատրվում ածխաջրերի և սպիտակուցների պարունակության շատանալը գյուղաբնակների օրաբաժնում: 1988 թ. կոլտնտեսականների ընտանիքները համապատասխանաբար 44,2 և 55,5 տոկոսով ավելի քիչ մսամթերքներ և բուսական յուղ են օգտագործել, քան բանվորների ու ծառայողների ընտանիքները: Այդ պատճառով նրանց օրաբաժնում յուղերի պարունակությունը 8,2 տոկոսով քիչ է եղել, քան բանվորների ու ծառայողների օրաբաժնում:

Սննդամթերքների համեմատությամբ ավելի արագ տեմպերով է աճում ոչ պարենային ապրանքների, առանձնապես տնական օգտագործման առարկաների սպառումը: Այսպես, մոտոցիկլետներ, ավտոմեքենաներ, ինչպես նաև կահույք, տնային գործածության այլ իրեր գնելու համար կոլտնտեսականների եկամուտների աճի տեմպը 1988 թ., 1985 թ. համեմատությամբ, կազմել է 120, մինչդեռ բանվորներինն ու ծառայողներինը՝ համապատասխանաբար 49,7 և 99,4 տոկոս: Պետք է նշել, որ անձնական սպառման ընդհանուր կառուցվածքում ոչ պարենային ապրանքների օգտին պարենային ապրանքների սպառման բաժինը բանվորների ու ծառայողների համեմատությամբ կոլտնտեսականների մոտ 8,7 տոկոսով նվազել է, որը գյուղի բնակչության կենսամակարդակի բարելավման ցուցանիշներից է:

Չնայած ծառայությունների ոլորտի ինտենսիվ զարգացմանը գյուղում, այդ նպատակով կատարվող ծախսումների բաժինը որոշ չափով փոքր է, քան բանվորների ու ծառայողների մոտ: Կոլտնտեսականների մոտ վճարովի ծառայությունների մեջ առանձնակի տեղ են բռնում բնակարանային-կոմունալ ծախսերը: Ըստ մեր հաշվարկումների, կոլտնտեսականների 100 ընտանիքի համար շինությունների կառուցման և դրանց կապիտալ նորոգման ծախսերը 1988 թ. կազմել են 7000 ռուբլի, որը 8,6 անգամ բարձր է այդ նպատակով բանվորների ու ծառայողների ծախսած միջոցներից: Դրա հետ մեկտեղ աճում են նաև բնակարանային վարձը և կոմունալ ծառայությունների հետ կապված ծախսերը: Դրանց աճը, 1988 թ. 1980 թ. համեմատությամբ կազմել է 93,5, մինչդեռ բանվորների ու ծառայողների մոտ՝ 38,1 տոկոս: 1988 թ. գյուղական վայրերի միջին հաշվով մեկ բնակչին ընկնում էր 15 քմ, մինչդեռ քաղաքում՝ 13,1 քմ ընդհանուր տարածություն: Սակայն գյուղական բնակֆոնդի բարեկեցության մակարդակն զգալիորեն ավելի ցածր է, քան քաղաքայինը, իսկ անհատական տներում ինժեներական սարքավորում կամ առհասարակ չկա, կամ էլ պարզեցված միջոցներով է ներկայացված:

Պահանջարկի և առաջարկի անհամապատասխանությունը հանգեցրել էր այն բանին, որ եկամուտների ընդհանուր ծավալի մեջ կուտակման բաժինը կոլտնտեսականների մոտ զգալիորեն մեծ էր, քան բանվորների ու ծառայողների մոտ, սակայն այդ խզումն արդեն վերացավ բանվորների ու ծառայողների մոտ այդ ֆոնդի ավելի քան քառակի ավելացման, իսկ կոլտնտեսականների մոտ նրա բաժնի որոշ կրճատման հետևանքով: Դրա հետ մեկտեղ, 100 ընտանիքի հաշվով կոլտնտեսականների կուտակումները բացարձակ արտահայտությամբ 11027,6 ռուբլով ավելի բարձր են: Եթե բանվորներն ու ծառայողները դրամը հիմնականում պահում են խնայողական բանկերում, ապա կոլտնտեսականները նախընտրում են այն թողնել տանը: Այդ պատճառով գյուղական վայրերում բնակչության մեկ շնչին ընկնող ավանդի միջին չափը 2,2 անգամ փոքր է: Միաժամանակ, 1988 թ. կոլտնտեսականների առձեռն ազատ դրամական միջոցները բնակչության մեկ շնչի հաշվով կազմել էին 99,6 ռուբլի, որը 17,2 անգամ շատ էր, քան բանվորներինն ու ծառայողներինը:

Գյուղի բնակչության կենսամակարդակի ձևավորմանն ավելի ու ավելի մեծ չափով են ներազդում սպառման հասարակական ֆոնդերը: Բյուջետային ուսումնասիրությունների տվյալները ցույց են տալիս, որ հանրապետության գյուղական բնակչությունը քաղաքային բնակչության համեմատությամբ արդեն ավելի մեծ չափով է օգտվում սպառման հասարակական ֆոնդերի վճարումներից ու արտոնություններից: Դրանք 100 ընտանիքի հաշվով 1988 թ. կազմեցին 61.973,8 ռուբլի՝ 46,7 տոկոսով գերազանցելով բանվորներին ու ծառայողներին տրամադրված այդպիսի վճարումների և արտոնությունների ծավալը: Սակայն գյուղական բնակչության համար նախատեսվող անվճար ծառայությունները դեռևս զգալիորեն հետ են մնում քաղաքում ցույց տրվող ծառայություններից:

Դեռ չեն վերացված քաղաքային ու գյուղական բնակչության բժշկական սպասարկման մակարդակի ու որակի էական տարբերությունները: Մեր հաշվարկների



համաձայն, գյուղում բժիշկների թիվը (10.000 բնակչի հաշվով) գրեթե երկու անգամ փոքր է, քան քաղաքում: 1988 թ. քաղաքի ու գյուղի հիվանդանոցային մահճակալների քանակները (10 հազար բնակչի հաշվով, հաշվի առնելով քաղաքային բուժական հիմնարկներից օգտվելը), հավասարվեցին և կազմեցին 83,5: Հարկ է նշել, որ գյուղական բնակչության մոտ 40 տոկոսը օգտվում է քաղաքային բուժական հաստատությունների ծառայություններից: Գյուղական վայրերում գերակշռում են սակավաթիվ մահճակալներով և բժիշկների մասնագիտացման համեմատաբար ցածր մակարդակով հիվանդանոցները: Շատ բնակավայրեր բժշկական հիմնարկներից հեռու են գտնվում: Այդ պատճառով բնակչության մեկ շնչի հաշվով բժշկական օգնության դիմելու դեպքերը 1,8 անգամ սակավ են, քան քաղաքում:

Սևեռուն ուշադրություն է դարձվում աճող սերնդի պահպանման ու դաստիարակության, գյուղում հանրակրթական ուսուցման վրա: Մեծ տեմպերով է ավելանում դպրոցների քանակը: Այսպես, վերջին տասնամյակներին գյուղում շահագործման են հանձնվել զգալիորեն ավելի շատ հանրակրթական դպրոցներ, քան քաղաքում: Երեխաների դաստիարակությանը շահեկանորեն օգնում են երկարօրյա դպրոցները, որոնցում ընդգրկված է գյուղի 1—8-րդ դասարանների սովորողների 38 տոկոսը, մինչդեռ քաղաքային բնակավայրերում՝ ընդամենը 24 տոկոսը: Ընդլայնվում է բարձր դասարանների սովորողների աշխատանքային ուսուցման և մասնագիտական կողմնորոշման բազան: Այսպես, դպրոցականների հանրօգուտ արտադրական աշխատանքի համար բազային ձեռնարկությունների սարքավորած աշխատանքային տեղերը գյուղում կազմել են 6,1 հազար, կամ 3,5 տոկոսով ավելի, քան քաղաքային բնակավայրերում: Դա գյուղում կադրերի ամրացման ծրագրի բաղկացուցիչ մասն է կազմում: Դրա հետ մեկտեղ պետք է նշել, որ մանկական նախադպրոցական հաստատություններով գյուղի բնակիչների ապահովվածությունը դեռևս անբավարար է: Այսպես, 1988 թվականին մանկական նախադպրոցական հաստատություններում ընդգրկվել էր գյուղական վայրերի երեխաների սոսկ 24, մինչդեռ քաղաքում՝ 47 տոկոսը:

Քաղաքի և գյուղի միջև գոյություն ունեցող էական տարբերությունների վերացումը լուրջ փոփոխություններ է պահանջում մշակույթի ոլորտում: Հարաճուն է մշակույթի ազդեցությունը գյուղական ողջ ապրելակերպի վերափոխման վրա: Փոխադարձաբար պայմանավորված այդ պրոցեսը բնորոշվում է այնպիսի միտումներով, ինչպիսիք են քաղաքային ապրելակերպի տարրերի տարածումը, գյուղական կենցաղի կուլտուրական ձևափոխումը, գյուղի բնակիչների կողմնորոշումը դեպի աշխատանքում ու կենցաղում կատարվող փոփոխությունները, կրթության ցանցի ընդլայնումը, ժամանցի անցկացման եղանակների բազմազանությունը, կուլտուրական ժամանցի ընտանեկան-տնային ձևերի դերի ուժեղացումը (ռադիո, հեռուստատեսություն, տպագիր հրատարակություններ), կուլտուր-մասսայական աշխատանքի ձևերի բազմազանությունը: Գյուղում ընդլայնվում է կուլտուր-լուսավորական հիմնարկների ցանցը:

1988 թ. գյուղական վայրերում մասսայական գրադարանների քանակը երկուսուկես անգամ մեծ էր քաղաքային բնակավայրերի համեմատությամբ, սակայն մեկ ընթերցողի հաշվով գրքերով ու հանդեսներով դրանց ապահովվածությունը նույնքան պակաս էր, քան քաղաքում: Գյուղական գրադարանների գրականությամբ վատ ապահովվածության պատճառով նրանցում ցածր է հաճախելիությունը: 1988 թ. մեկ գրադարանին ընկնում էր 0,7 հազար, մինչդեռ քաղաքայինին՝ 1,9 հազար ընթերցող:

Գյուղում մեծ ուշադրություն է նվիրվում կուլտուր-լուսավորական հաստատությունների շինարարությանը. գյուղական վայրերում 1988 թ. ակումբային հաստատությունների քանակը եռակի ավելի էր քաղաքայինների համեմատությամբ: Ուշագրավ է այն, որ քաղաքային ու գյուղական բնակավայրերում, կինոսեանսների հաճախումները գրեթե համաչափ են, սակայն գյուղում այդ նկատառումով աճի, իսկ քաղաքում նվազման միտում է նկատվում:

Գյուղում ազատ ժամանակի ավելանալը և նրա ռացիոնալ օգտագործումը, այդ նպատակով անհրաժեշտ պայմանների ստեղծումը սոցիալ-տնտեսական և գաղափարա-քաղաքական հրատապ խնդիր են: Պետք է նշել, որ կոլտնտեսականները օրվա ընթացքում ավելի քիչ ազատ ժամանակ ունեն, քան բանվորներն ու ծառայողները, թեև աշխատանքային օրվա տևողությունը գրեթե հավասար է: Դա կապված է այն բանի հետ, որ կոլտնտեսականների ընտանիքներում տնային տնտեսությունը վարելու համար 7,7 տոկոսով ավելի շատ ժամանակ է պահանջվում: Բանվորների ու ծառայողների մոտ այդ նպատակով ժամանակի ծախսումը նվազում է, ապա կոլտնտեսականներինը՝ ընդհակառակը, ավելանում: Կոլտնտեսականների ազատ ժամանակի ա-

վելացման համար առաջնահերթ նշանակություն ունի սպասարկման ոլորտի զարգացման և կենցաղի բարելավման հիման վրա տնային տնտեսությունում ժամանակի ոչ ռացիոնալ ծախսումների կրճատումը:

Օրվա ժամանակի ոչ քիչ բաժինը (մոտ 5 տոկոս) զբաղեցնում է օժանդակ տընտեսությունում կատարվող աշխատանքը: Ֆիզիոլոգիական պահանջմունքների (սննդառություն, քուն և այլն) բավարարման համար օգտագործվող ժամանակը կոլտնտեսականների մոտ կազմում է 39, իսկ բանվորների ու ծառայողների մոտ՝ 36 տոկոս: Բայց բանը միայն ազատ ժամանակի ծավալի մեծացումը չէ: Ինչպես ցույց են տալիս սոցիոլոգիական ուսումնասիրությունները, կոլտնտեսականների ազատ ժամանակի 80 տոկոսը հատկացվում է պասիվ հանգստին, զվարճանքներին, որոնց հիմնական տեսակը հեռուստահաղորդումների դիտումն է և ռադիոունկնդրումը: Դեռևս թույլ է կոլտնտեսականների հաղորդակցումը մշակույթին ու արվեստին, սպորտին, հասարակական-քաղաքական գործունեությանը:

Այո, հանուն համընդհանուր բարօրության մենք պարտավոր ենք պատշաճը հատուցելու գյուղացուն՝ բարձրացնելու նրա աշխատանքի հեղինակությունը և ապրուստի որակը հասցնելու քաղաքայինի մակարդակին: Բայց դա, անշուշտ, պետք է ձեռք բերվի ոչ թե բանվոր դասակարգի, ոչ էլ ընդհանուր առմամբ քաղաքի կենցաղային պայմանների վատացման միջոցով:

Այսօր շատ կարևոր, հրատապ է քաղաքի ու գյուղի կենսամակարդակի ու շահերի մերձեցման, գործարար համագործակցության սկզբունքների հիման վրա գյուղացիության, բանվոր դասակարգի և մտավորականության դաշինքի ամրապնդման թեզի նորացումը: Գյուղի սոցիալական զարգացումն արագացնելու, գյուղի աշխատավորների ստեղծագործական հնարավորությունների լիովին բացահայտման նպաստավոր պայմաններ ստեղծելու, պարենային ծրագրի կատարման գործում նրանց ներդրումը մեծացնելու համար հարկ է հետևողականորեն կենսագործել գյուղի բնակիչների կարիքներին ու պահանջմունքներին առավել մեծ չափով համապատասխանող սոցիալական դինամիկ քաղաքականություն:

Գյուղի բնակիչների կյանքի ու աշխատանքի պայմանների անշեղորեն բարելավման, սոցիալական արդարության սկզբունքի իրականացման, քաղաքի ու գյուղի միջև գոյություն ունեցող էական տարբերությունների վերացման ծրագիրը ներառնում է.

— գյուղի աշխատավորների կենսամակարդակի էական փոփոխում, նրանց բարեկեցության աճի տեմպերի արագացում.

— գյուղատնտեսության մեջ աշխատող մարդկանց աշխատանքային ակտիվության բարձրացման տնտեսական արդյունավետ մեխանիզմի ստեղծում.

— գյուղական աշխատանքային պոտենցիալի ռացիոնալ օգտագործում, արգասավոր ժողովրդագրական քաղաքականության իրականացում.

— գյուղի բնակչության սոցիալ-մշակութային բարիքներով ապահովվածության գործում ռեգիոնալ անհամամասնությունների, գյուղի և քաղաքի բնակիչների աշխատանքային ու կենցաղային պայմանների տարբերությունների վերացում:

Պետք է ամեն ջանք գործադրել, որպեսզի գյուղի ամեն մի աշխատող, գյուղացիական ամեն մի ընտանիք մոտակա ժամանակներս զգա, որ այդ ծրագիրն արդեն իրականացվում է: Այդ ամենը վերջին հաշվով նպատակամղված է մեր հանրապետությունում և ողջ երկրում պարենային լիության ստեղծմանը, մեր բոլոր քաղաքացիների սննդամթերքներով ապահովման բարելավմանը, վերակառուցման առաջնահերթ խնդիրների լուծմանը:

Գյուղաբնակների բարեկեցության բարձրացման հետ մեկտեղ առանձնակի հոգածություն է պահանջում մեր գյուղացուն յուրահատուկ աշխատեղանակի և կենցաղավարության ավանդույթների պահպանությունը: Հողին նվիրվածությունը, աշխատասիրությունը, ժողովրդական բնատուր իմաստնությունը, ազգային հպարտությունը երկրագործի բարոյական անանց արժանիքներն են: Գյուղը մեր ժողովրդի կենսահաստատության մշտաբուխ աղբյուրն է և ազգային նկարագրի ու հոգեբանության ավանդական կրողը:

---



# ՄԵՐ ՍՈՒՐԸ ՓԱՌՔՈՎ ԴՐԵՑԻՆՔ ՊԱՏՅԱՆ

Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

ՔԱՌԱՍՈՒՆՀԻՆԳ ՏԱՍՆԱՄՅԱԿ է մեզ բաժանում այն օրերից, երբ Եվրոպայում լռեցին 1941—1945 թթ. Հայրենական մեծ պատերազմի վերջին համազարկերը՝ ըստ էության ավետելով նաև երրորդ աշխարհամարտի ավարտը ամենուր: Ուրիշի հողերը զավթելու, ուրիշ ժողովուրդներին իրենց կամքը թելադրելու նպատակով աշխարհը պատերազմի հորձանուտ նետած Գերմանիայի, ապա Ճապոնիայի զինված ուժերի ջախջախման գործում վճռական ներդրումը պատկանում է Խորհրդային Միությանը: Փաստորեն Հայրենական մեծ պատերազմի ժամանակ՝ խորհրդա-գերմանական վիթխարի ռազմաճակատի տարբեր հատվածներում ծավալված մարտերում է, որ հաջողվեց ծնկի բերել ահեղ թշնամուն, ստիպել նրան քաշվելու իր որջը և ի վերջո հանձնվելու հաղթողի կամքին: Այդ ժամանակներից, ինչպես ասում են, շատ ջուր է հոսել, արմատական տեղաշարժեր են կատարվել մեր մոլորակի վրա:

Մարդկության հետպատերազմյան զարգացումը նորից հաստատեց այն ճշմարտությունը, որ միայն իրավական պետության մեջ մարդը կարող է ազատ լինել, առանց հարկադրանքի և արտատնտեսական ճնշման իր ուժերը նվիրաբերել հասարակության բարգավաճմանը, դրա դիմաց ձեռք բերելով աշխարհի հրաշալիքներին անկաշկանդ հաղորդակցվելու օրինական իրավունք, անանց երաշխիք:

Հիտլերյան ֆաշիզմը՝ ազգային սոցիալիզմը, որի հիմքում ընկած էր իբրև ի վերուստ գերմանական ժողովրդին շնորհված՝ առնվազն երկու հազարամյակ աշխարհատեր լինելու «իրավունքի» վերաբերյալ տեսությունը, գալիս էր դեռ անցյալից և իր գագաթին հասավ Ադոլֆ Հիտլերի «Իմ պայքարը» գրքում: Հիտլերին և նրա համախոհներին հաջողվեց գերմանական ժողովրդի մեծամասնությանը վարակել ռասայական տեսության ցնորամտությամբ և շատ կարճ ժամանակում ստեղծել մի այնպիսի հզոր ուժ, որը աշխարհի աչքերի առջև մի երկու-երեք տարում պետք է քարուքանդ աներ առաջին համաշխարհային պատերազմից հետո Եվրոպայում հաստատված խաղաղության վերսալյան համակարգը:

Ֆաշիստական Գերմանիային երբեք չէր հաջողվի այս կամ այն պատրվակով զավթել Ավստրիան, Չեխոսլովակիան, Լեհաստանը, Բելգիան, Հոլանդիան, Հարավսլավիան և այլ երկրներ առանց այն օգնության, որ նրան ցույց տվեցին Անգլիան, Ֆրանսիան, ԱՄՆ-ը:

30-ական թթ. կեսերին, երբ Հիտլերը ավելի շ— շաղակրատում էր գերմանական արիական ցեղի «պատմական առաքելության» մասին, քան իրական քայլերի դիմում, Արևմուտքի դեմոկրատական շրջանները այնքան էլ լուրջ նշանակություն չէին տալիս նրա աշխարհակալական նկրտումներին: Այդ ժամանակ նրանք շատ ավելի ուշադիր հետևում էին Խորհրդային Միությանը, ուր, մի կողմից, արագ թափ էր առացել վիթխարի տարածքներով երկրի անսպառ պաշարները ռազմական էկոնոմիկայի մեջ ներգրավելու ընթացքը, մյուս կողմից՝ չէին թաքցվում Կոմինտերնի միջոցով դեմոկրատական երկրներում վիճակը ապակայունացնելու մտադրությունները: Դա հատկապես վտանգավոր էր 1930-ական թթ. բռնկված ճգնաժամի հետևանքով սրվող սոցիալական հակասությունների առկայության պայմաններում: Բայց շուտով ստեղծվեց նոր իրադրություն. Հիտլերը խոսքից անցավ գործի, սկսեց շինծու պատրվակներով հաշվեհարդար տեսնել Գերմանիային հարևան երկրների հետ՝ փաստորեն վերջ տալով նրանց ինքնուրույն պետական գոյությանը: Մինչդեռ Ստալինը, մարդկանց ուշադրությունը կենսական խնդիրներից շեղելու, նրանց «խակական պտուտակ» դարձնելու նպատակով շարունակում էր իր ճամարտակությունները «ամենադեմոկրատական ստալինյան սահմանադրության», «գյուղի և քաղաքի էական տարբերությունների վերացման», «կոմունիզմին մոտենալուն զուգընթաց դասակարգային պայքարի սրման» և նման անիմաստ, առարկայազուրկ այլ թեմաների շուրջ: Հիտլերի ուշադրությունը դեպի Արևելք՝ խորհրդային կողմ շեղելու քաղաքականության արդյունք էր Մյունխենյան համաձայնությունը, որ կնքեցին Գերմանիան, Իտալիան, Անգլիան և Ֆրանսիան 1938 թ. սեպտեմբերի 30-ին: Երբ Իտալիան ներկայացնող Մուսոլինին՝ «առանցքի գծով» Հիտլերի դաշ-

---

*ՍԻՄՈՆՅԱՆ ԱԲԵԼ ՊՈՂՈՍԻ— պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր, պատերազմի վետերան, տանկային գվարդիական գնդի զումարտակի նախկին հրամանատար։*

նակիցը, ամենևին էլ հարկ չէր համարում թաքցնելու իր նվիրվածությունը Եվրոպան վերաձևելու քաղաքականությանը, ապա Անգլիայի ու Ֆրանսիայի ներկայացուցիչներ Չեմբեռլենն ու Դալադյեն ձգտում էին բանն այնպես ներկայացնել, թե Մյունխենով իրենք, իբր, «փրկեցին խաղաղությունը»։ Այսուհետև Հիտլերը դարձավ այն կուռքը, որի կողքով անտարբեր չէր կարող անցնել և ոչ մի «պատվասեր» քաղաքական գործիչ։ Հենց դրանում պետք է որոնել այն քայլերի դրդապատճառը, որոնք անմիջապես հաջորդեցին Մյունխենյան համաձայնությանը և նրանից մեկ տարի էլ չանցած, 1939 թ. օգոստոսի 23-ին, հանգեցրին Ռիբենտրոպ-Մոլոտով պակտի կնքմանը։ Խորհրդա-գերմանական այդ համաձայնագրով Գերմանիան ըստ էության ազատում էր իր ձեռքերը երկրորդ համաշխարհային պատերազմը սանձազերծելու համար։ Հիտլերը այդ համաձայնագրին այնպիսի կարևորություն էր տալիս, որ այն գլուխ բերելու նպատակով նույնիսկ մեծ «զիջումների» գնաց՝ պակտին կից գաղտնի հոդվածներով Ստալինի հետ ազդեցության ոլորտների բաժանելով Արևելյան Եվրոպան։

1939 թ. սեպտեմբերի 1-ին, երբ դեռ չէր էլ չորացել Ռիբենտրոպ-Մոլոտով պակտի վրա դրված ստորագրությունների թանաքը, Գերմանիան հարձակվեց Լեհաստանի վրա, հաջորդ երկու օրերին Անգլիան ու Ֆրանսիան պատերազմ հայտարարեցին Գերմանիային, սկսվեց երկրորդ համաշխարհային պատերազմը։ Ստալինն էլ ջանում էր ցույց տալ իր հավատարմությունը Գերմանիայի հետ ստորագրած պայմանագրին. խորհրդային զորքերը ևս մտան Լեհաստան։

Ըստ Հիտլեր-Ստալին գաղտնի համաձայնության, Ֆինլանդիան ներքաշվել էր խորհրդային «ազդեցության գոտու մեջ»։ Սակայն այդ երկիրը ոչ մի կերպ չէր ուզում կորցնել իր անկախությունը։ Ճիշտ է, Ստալինի նախաձեռնությամբ 1939 թ. նոյեմբերին բռնկված խորհրդա-ֆինլանդական պատերազմը ամենից առաջ ավարտվեց նրանով, որ երկու երկրների սահմանը Լենինգրադի մոտակայքում հօգուտ խորհրդային կողմի որոշ չափով հետ տարվեց։ Սակայն այն ցույց տվեց, որ ուժերի բացարձակ գերակշռությամբ հանդերձ խորհրդային բարձր հրամանատարությունը չէր կարողանում անհրաժեշտ մակարդակով լուծել ժամանակակից պատերազմում առաջացած ռազմաստրատեգիական խնդիրները։ Այդ առումով գրեթե ոչինչ չփոխվեց նաև 1940 թ. ամռանը Մերձբալթյան երկրների՝ Էստոնիայի, Լատվիայի և Լիտվայի միացմամբ, և դրա գլխավոր պատճառը ոչ միայն ժամանակի պակասն էր, այլ այն բարդ իրադրությունը, որ ԽՍՀՄ-ում ստեղծվել էր ստալինյան բռնապետության հետևանքով։

1941 թ. հունիսի 22-ին, կիրակի օրը, գիշերվա ժամը 3 անց 30 րոպեին Գերմանիան, առանց պատերազմ հայտարարելու, առանց որևէ պահանջ ներկայացնելու Սև ծովից մինչև Բալթիկ ծովն ընկած սահմանի ամբողջ երկարությամբ հարձակվեց Խորհրդային Միության վրա։ Բնորոշ է, որ հենց այդ ժամին էլ ցորենով, նավթով և այլ ապրանքներով բեռնված գնացքը սահմանը կտրում էր հակառակ ուղղությամբ։ Ստալինը մինչև վերջին րոպեն չէր ուզում հավատալ, որ Հիտլերը կարող է դրժել իր խոսքը, խորհրդային երկրի վրա հարձակման հրաման արձակել, չնայած տարբեր աղբյուրներից այդ մասին եղած բազմաթիվ հավաստի ահազանգերին։ Հետագայում նա հնարեց հարձակման հանկարծակիության վարկածը, փորձելով ապացուցել, որ հենց դրանով են բացատրվում պատերազմի սկզբում գերմանական զորքերի հաջողությունները։

ԽՍՀՄ-ի դեմ Գերմանիայի հետ մեկտեղ հանդես եկան Իտալիան, Ռումինիան, Ֆինլանդիան, Հունգարիան։ Միառժամանակ անց, նրանց զինվորական միավորումների հետ համագործակցելու համար, խորհրդա-գերմանական ռազմաճակատ մեծ դիվիզիա ուղարկեց Իսպանիան։ Չնայած չեզոքության մասին հայտարարություններին, Թուրքիան, Պորտուգալիան, Ճապոնիան, Շվեդիան իրականում օգնում էին Գերմանիային։ Կոպտորեն խախտելով սևծովյան նեղուցներով նավերի անցման վերաբերյալ 1936 թ. Մոնտրյոյում կնքված միջազգային համաձայնագիրը, Թուրքիան թույլ տվեց, որ Սև ծով մտնեն գերմանական և իտալական նավերը։ Նա միաժամանակ խորհրդա-թուրքական սահմանում կենտրոնացրեց իր զորամիավորումները, իսկ պատերազմը սկսելուց երկու օր հետո, հունիսի 24-ին Գերմանիայի հետ ստորագրեց «Բարեկամության և չհարձակման մասին» պայմանագիր։ Այսպիսով, Գերմանիան ոչ միայն ի հաշիվ Թուրքիայի ապահովեց իր բանակի աջ թևը, այլև հնարավորություն ստացավ նրան փաստորեն ընդգրկելու ԽՍՀՄ-ի դեմ պատերազմի ստրատեգիական պլանների մեջ։

Ըստ նախօրոք մանրամասնորեն մշակված պլանի, գերմանական զորքերը, ներխուժելով Խորհրդային Միություն, առաջ շարժվեցին երեք գլխավոր ուղղություններով՝ հյուսիսային կողմից Մերձբալթիկայով դեպի Լենինգրադ, կենտրոնում՝ Բելոռուսիայի վրայով դեպի Մոսկվա, հարավում՝ դեպի Կիև, ապա Դոնբաս։ Օգտվելով այն բանից, որ խորհրդային գլխավոր հրամանատարությունը սկզբում գրեթե կորցրել էր գլուխը, ինքնահոսի թողնելով զորքերի ղեկավարությունը, գերմանական բանակները, մանավանդ զրահատանկային և մոտոմեքենայացված միավորումները, արագ թափով խրվեցին երկրի խորքը, հաճախ հետևում թողնելով նույնիսկ խորհրդային ամբողջ զորամիավորումներ։ Թվում էր, թե այստեղ ևս կրկնվում է ճիշտ այն, ինչ մեկ տարի առաջ տեղի էր ունեցել Ֆրանսիայում, երբ հյուսիսից շրջանցելով Մաժինոյի պաշտպանության գիծը, գերմանացիները հեղեղի պես տարածվեցին երկրով մեկ և ընդամենը երկու շաբաթ հետո գրավեցին Փարիզը։ Սակայն խորհրդա-գերմանական ռազմաճակատում հենց սկզբից ստեղծվեց բոլորովին այլ իրադրություն։ Խորհրդային զինվորները, խախտելով, կարծես, պատերազմական «կանոնները», երբեք չէին հաշտվում իրենց դիրքերը հակառակորդին թողնելու, առաջին իսկ կրակոցներից հետո հակառակորդի առաջ ձեռքերը բարձրացնելու հետ և անձնվիրաբար, հաճախ կյանքի գնով, մարտնչում էին զավթիչների դեմ, պատնեշում նրանց առաջխաղացումը։ Դա կատարվում էր ահռելի զոհողությունների գնով։ Բրեստի, ապա Սմոլենսկի և Կիևի համար մղված պաշտպանական մարտերը, հակառակորդի կասեցումը Լենինգրադի, ապա Մոսկվայի մատույցներում, ինչպես տեխնիկայի, այնպես էլ կենդանի ուժի զգալի կորուստները, հազարավոր կիլոմետր հեռավորության վրա առաջին դիրքերում գտնվող զորքերին մատակարարելու գործում օրեցօր աճող դժվարությունները՝ պատերազմի հենց առաջին ամիսներին լուրջ խնդիրներ դրեցին գերմանական հրամանատարության առաջ։ Նա արդեն զգում էր, որ ռազմաճակատի կայունացումը, իր զորքերի առաջխաղացման կասեցումը լավ բան չեն խոստանում։

Դրան հակառակ, արմատական բարելավումներ կատարվեցին խորհրդային երկրի պաշտպանունակությունը կազմակերպելու գործում։ Վերջինիս մեծապես նպաստեց այն, որ Պետական պաշտպանության նորաստեղծ կոմիտեի ղեկավարությամբ հնարավոր եղավ ռազմաճակատում կռվող զորքերի կառավարման մեջ հետզհետե բեկում մտցնելու հետ մեկտեղ երկրի տնտեսությունը փոխադրել ռազմական ռելսերի, ռազմաճակատի պահանջները բավարարելու նպատակով գործի դնել մեր նյութական ու մարդկային զգալի ռեսուրսները։

Ձմեռը, խիստ, երկարատև սառնամանիքներով՝ հատկապես այդ տարի, սկսվեց Մոսկվայի մատույցներում խորհրդային զորքերի հարձակմամբ, և հիտլերյան զորքերը երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին առաջին անգամ լուրջ պարտություն կրեցին։ Հետագայում որոշ պատմաբաններ դա սկսեցին բացատրել նրանով, որ գերմանացիները պատրաստ չէին դաժան ձմռան պայմաններում մարտեր մղելու։ Իսկ գերմանացի պատմաբան Ֆուլերն էլ ավելի «պատկերավոր» դարձրեց այդ միտքը, ասելով, որ գերմանական զորքերին հաղթեցին երկու ռուս գեներալներ՝ «գեներալ Ձմեռը» և «գեներալ Սառնամանիքը»։ Բայց այդ պարտությունը միանգամայն օրինաչափ էր, քանի որ նրանք թյուր պատկերացում ունեին ոչ միայն ԽՍՀՄ ռազմական պոտենցիալի, այլև այն հասարակական ու աշխարհագրական միջավայրի մասին, որտեղ պետք է ընթանար պատերազմը։

Սանձազերծելով պատերազմը, Հիտլերը հույս ուներ, որ ինքն անմիջապես կհաղթի նախ և առաջ այն պատճառով, որ խորհրդային երկրի ժողովուրդները, ընդդեմ գերմանացիների միավորվելու փոխարեն, դուրս կգան միմյանց դեմ, երկրում կստեղծվի մի այնպիսի քաոս, որից ոչ մեկը գլուխ չի հանի։ Մոտակա իրադարձությունները ցույց տվեցին, որ Հիտլերը սխալվել էր իր հաշիվներում։ Եթե Հիտլերին նույնիսկ հաջողվեր գրավել երկրի թեկուզ կեսը, ապա նա ստիպված կլիներ իր գրաված տարածքներում պարտիզանական շարժումը հաղթահարելու, ռազմաճակատ տանող ճանապարհների անվտանգությունը ապահովելու նպատակով այնքան զորք պահել, որ հազիվ թե կարողանար շարունակել մարտերը մյուս կեսը գրավելու համար։

Արատավոր դուրս եկավ նաև Հիտլերի մյուս «հաշվարկը»։ Նա համոզված էր, որ ոչ ոք օգնության ձեռք չի մեկնի Խորհրդային Միությանը։ Սակայն 1941 թ. հունիսի 22-ին Չերչիլը, իսկ հուլիսի 24-ին Ռուզվելտը իրենց կառավարությունների անունից հանդես եկան Խորհրդային Միությանը օգնություն ցույց տալու մասին համապատասխան հայտարարություններով։ Սկսվեց կազմավորվել հակաֆաշիստական կոալիցիա, որն ավելի զորացավ, երբ 1941 թ. դեկտեմբերի 7-ին Ճապոնիան հարձակվեց ԱՄՆ-ի վրա Փիրլ Հարբորում՝ խորտակելով նրա խաղաղօվկիանոսյան նավատորմի զգալի մասը։ Խմբավորումն ընդգրկեց ավելի քան հարյուր երկիր, որոնք, այս կամ այն չափով ֆաշիզմի դեմ հաղթանակի մեջ իրենց ներդրումը զուգընթաց, 1944 թ. մասնակցեցին Միավորված ազգերի կազմակերպության (ՄԱԿ) հիմնադրմանը։

Ստալինգրադի և Կուրսկի ճակատամարտերում գերմանական զորքերի պարտությունները կանխորոշեցին ֆաշիզմի փլուզումը։ Այն ավելի ուժեղացավ, երբ 1944 թ. մի կողմից խորհրդային զորքերի նորանոր հարվածների ներքո, մյուս կողմից Արևմուտքում երկրորդ ճակատի բացման շնորհիվ ռազմական գործողությունների նոր թատերաբեմում կրած անհաջողությունների հետևանքով Գերմանիան հետզհետե ուժասպառ եղավ։

Ֆաշիստական Գերմանիային այլևս ոչինչ փրկել չէր կարող։

1945 թ. մայիսի 8—9-ի գիշերը Բեռլինում հիտլերյան զինվորական հրամանատարության ներկայացուցիչները ստորագրեցին Գերմանիայի անձնատուր լինելու մասին ակտը։

1945 թ. սեպտեմբերի 2-ին անձնատուր եղավ նաև Ճապոնիան, ավարտվեց երկրորդ համաշխարհային պատերազմը։

Ֆաշիզմի դեմ մղվող մահացու կռվում կարևոր դեր խաղաց հայ ժողովուրդը։ «Պրավդա» թերթը, 1941 թ. օգոստոսի 29-ին, «Հայ ժողովուրդը

դյունաբերական ձեռնարկությունների գործունեությունը: Խորհրդային երկրին զգալի օգնություն ցույց տվեց արտասահմանի հայկական գաղթավայրերի բնակչությունը: Նրա միջոցներով կառուցվեց «Սասունցի Դավիթ» տանկային զորասյունը, որը սկզբում կռվեց 3-րդ ուկրաինական, այնուհետև 1-ին մերձբալթյան ռազմաճակատներում, որի հրամանատարը Հովհաննես Բաղրամյանն էր:

Հայ պատմագրությունը որոշակի գործ է կատարել պատերազմում հայերի մասնակցության պատմությունը հետազոտելու ասպարեզում. լույս են տեսել աշխատություններ՝ նվիրված առանձին ազգային զորամիավորումների գործողություններին, տարբեր ռազմաճակատներում հայ ռազմիկների սխրանքներին, թիկունքում կատարած աշխատանքին: Սակայն պատերազմում հայերի հիշարժան հերոսական գործերի համեմատ կատարվածը շատ քիչ է: Բավական է ասել, որ լրիվ չէ նույնիսկ հանրապետությունից պատերազմի ժամանակ բանակ զորակոչվածների ցուցակը, էլ չխոսենք նրանցից յուրաքանչյուրի մարտական գործերի, կյանքի մասին: Մինչդեռ պատմության համար հարկավոր է տվյալներ ժողովել նաև հանրապետությունից դուրս բանակ մեկնած հայերի, մասնավորապես մարտի դաշտում զոհված ռազմիկների մասին: Այս առումով լավ օրինակ կարող է ծառայել «Ամերիկահայերը երկրորդ համաշխարհային պատերազմում» ժողովածուն, որի առաջին հրատարակությունը լույս է տեսել դեռևս 1952-ին, ապա լրացվել 1985-ին՝ երկրորդ հրատարակության ժամանակ: Այն տեղեկություններ է պարունակում գրեթե բոլոր հայերի մասին, որոնք պատերազմել են ամերիկյան բանակի կազմում: Մեզ մոտ հրապարակված աշխատությունների էական թերություններից կարելի է նշել այն, որ առանձին դիվիզիաների, զորահրամանատարների գործողությունները, ռազմիկների գործերը բանիմացությամբ գնահատելու փոխարեն դրանք հաճախ պարուրված են «գաղափարական շղարշով», որը կոչված է «դաստիարակելու» ընթերցողին:

Չի կարելի համոզիչ համարել նաև պատերազմի տարիներին սփյուռքում գործող կուսակցությունների գործունեությանը տրված գնահատականները: Այսպես, ՀԽՍՀ ԳԱ հրատարակությամբ լույս տեսած «Հայ ժողովրդի պատմության» բազմահատորյակի 8-րդ հատորում կարդում ենք, որ «Դաշնակցականները ամեն կերպ ձգտում էին իրենց ձեռքը վերցնել սփյուռքի հայության ղեկավարությունը, նրան կտրել հայրենանպաստ գործունեությունից, պառակտել առաջադիմական ուժերը, թուլացնել հակաֆաշիստական պայքարը... Դաշնակցությունը իր պարագլուխների մի մասին (*) փոխադրեց Բեռլին՝ հիտլերականների հետ գործակցելու նպատակով»: Նախ, ամերիկյան բանակում ֆաշիստների դեմ կռվող հայերի մեծ մասը դաշնակցական էր, այնպես որ նրանք չեն թուլացրել «հակաֆաշիստական պայքարը», այնուհետև, քաջ գիտակցելով, որ խորհրդա-գերմանական ռազմաճակատում 1942 թ. ստեղծված իրադրությունը չի բացառում, որ գերմանացիները ներխուժեն Անդրկովկաս, ընդ որում և Հայաստան, դաշնակցությունը միանգամայն ճիշտ, խելացի տակտիկական քայլի դիմեց՝ աշխատելով գերմանական շրջաններում ունենալ իր ներկայացուցիչները, որոնք պատեհ առիթին կպաշտպանեին հայերի շահերը: Որ դաշնակցականները այդ քայլով դույզն անգամ չեն հզորացրել ֆաշիստական Գերմանիայի ռազմական հզորությունը՝ ապացուցելու հարկ չկա: Այս կապակցությամբ հետագա հետազոտությունների կարիք ունեն հայկական լեգեոնի գործունեությունը, հայ գերիների կյանքը հակառակորդի ճամբարներում, հայ կուսակցությունների «պատերազմական» տակտիկան և նման այլ հարցեր:

Երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտից արդեն չորսուկես տասնամյակ է անցել: Աշխարհ է եկել մի նոր սերունդ, որին պատերազմը որպես պատմություն է հայտնի, բայց և այնպես իրենց լուծմանն են սպասում մի շարք պրոբլեմներ, որոնք մնացել են տակավին պատերազմական ժամանակներից և որոնց վերջնական լուծումը, ինչպես կյանքն է ցույց տալիս, կենսական կարևորություն ունի համայն մարդկության համար: Գերմանիայի հետ դեռևս չի կնքվել պատերազմի ավարտի վերաբերյալ վերջնական պայմանագիր, քանի որ ահա չորսուկես տասնամյակ է, ինչ չկա միասնական Գերմանիա, որը և կարող էր ստորագրել այն: Ցալթապոտսդամյան համակարգի համաձայն Եվրոպայի կենտրոնում իրենց համար «տնօրինության գոտիներ» ստեղծեցին չորս մեծ տերությունները, որոնց միջև եղած տարաձայնությունները շուտով հանգեցրին գերմանական երկու պետությունների՝ ԳՖՀ-ի և ԳԴՀ-ի ստեղծմանը: Վերջերս այդ երկու պետությունների միավորման ուղղությամբ ձեռնարկված քայլերը անմիջականորեն շոշափում են շատ երկրների, մասնավորապես Լեհաստանի և Խորհրդային Միության շահերը: Կուրիլյան կղզախմբի չորս կղզիների առիթով Խորհրդային Միության և Ճապոնիայի միջև ծագած վեճերը մինչև այժմ թույլ չեն տալիս վերջնական պայմանագիր կնքել երկու երկրների միջև: Աշխարհի տարբեր մասերում, մասնավորապես Արևելյան Եվրոպայի երկրներում, կատարվում են պետական, սոցիալ-տնտեսական արմատական փոփոխություններ, նրանք հնարավորություն են ստանում տնօրինելու իրենց բախտը:

Թվում էր, թե պատերազմից հետո, երբ գիտատեխնիկական առաջընթացի, տեխնոլոգիայի կատարելագործման շնորհիվ հնարավորություններ էին ստեղծվել տարբեր երկրներում, ընդ որում, ամենից առաջ հաղթող երկրներում ժողովրդական զանգվածների կենսամակարդակը բարձրացնելու համար, ոչ մի բան այլևս չէր կարող խանգարել, որպեսզի այդ երկրների շարքում, ինչպես դա պատերազմի ժամանակ էր, առաջինը կամ առաջիններից մեկը լիներ Խորհրդային Միությունը: Բայց, դժբախտաբար, այդպես չեղավ: Չնայած տարածքի և բնական պաշարների առումով իր անհամեմատ մեծ հնարավորություններին, նա իրենից շատ ու շատ առաջ թողնելով նույնիսկ պարտված երկրներին, ինքը դոփեց տեղում կամ հետ գնաց ժողովրդի կենսամակարդակի ցուցանիշներով: Հազիվ թե հարկ լինի ապացուցելու, որ իրերի նման վիճակի պատճառը առաջին հերթին պետք է փնտրել երկրի քաղաքական համակարգում, որը մարդու ստեղծագործական հնարավորությունները ըստ ամենայնի շղթայազերծելու համար պայմաններ ստեղծելու փոխարեն նրան փաստորեն օտարել է սեփականությունից, իրեն վերագրել ոչ միայն նրա արտադրանքը, այլ նույնիսկ նրա բախտը տնօրինելու իրավունք, ի վերջո, նրան իսկապես դարձրել «արտադրության գործիք»: Պատերազմից քառասուն տարի հետո սկսվել է այդ համակարգի ապամոնտաժումը: Սակայն վերակառուցումը առայժմ ակնառու արդյունքներ է տվել սոսկ միջազգային հարաբերություններում՝ լարվածությունը թուլացնելու, խաղաղությունն ամրապնդելու առումով, իսկ ինչ վերաբերում է երկրի ներքին կյանքին, ապա այն դեռևս սպառնում է հրապարակայնության և դեմոկրատիայի առանձին տարրերի «կիրառությամբ»: Նման պարագաներում մարդկանց, ազգերի, ժողովուրդների քաղաքական ակտիվությունը, որ նիրհում էր տասնամյակներ շարունակ, պոռթկաց անասելի թափով...

Հաղթանակի քառասունհինգամյակը նշելիս հատուկ ուշադրության առարկա են ԽՍՀՄ զինված ուժերը, որոնք կոչված են լինելու Հայրենական մեծ պատերազմում խորհրդային ժողովուրդների մարտական ավանդույթների ժառանգորդը: Հայրենիքի պաշտպանությունը իսկապես որ սրբազան գործ է: Յուրաքանչյուր քաղաքացի, ներկայումս նաև իգական սեռի ներկայացուցիչներ, պետք է երիտասարդ հասակում սովորեն զինվորական գործը, պատրաստ լինեն փորձության ժամին սատար կանգնելու հայրենիքին: Դրա համար հարկավոր է նոր մոտեցում, ուսումնասիրել առանձին երկրների փորձը: Հարկ է նշել, որ Հայրենական մեծ պատերազմի պատմության փառապանծ էջերից է ազգային դիվիզիաների տարեգրությունը, նրանց մարտական գործերը պետք է հայրենասիրական ներշնչման աղբյուր լինեն երիտասարդության համար:

1941—1945 թթ. Հայրենական մեծ պատերազմի պատմությունը վերստին հաստատում է այն պարզ ճշմարտությունը, որ ազգերի դաշնակցությունը, ժողովուրդը, պետությունը ուժեղ են, երբ ունեն ընդհանուր նպատակ, երբ աշխատում, մաքառում են հանուն ընդհանուր շահերի:

## ԹՈՂ ԵՐԲԵՔ ՉԿՐԿՆՎԻ

*ԱՐԴԵՆ 45 ՏԱՐԻ Է ԱՆՑԵԼ այն օրերից, ինչ լռել են պատերազմի մահաբեր հրանոթները: Մեծ Հայրենականի մասնակիցները հաղթանակի փառքով պսակեցին իրենց անցած մարտական ճամփան: Մենք տեսել ենք սով ու ավեր, գաղթ ու կոտորած, բայց անսասան ենք պահել մեր հավատը և այն սերունդներին փոխանցել: Հիմա հիշողություններ են դարձել մեր անցյալի մռայլ էջերը և, երբ մի պահ մտաբերում եմ, ավելի խորն եմ ըմբռնում այն մեծ նվիրումն ու սերը, որ մենք տածում էինք հարազատ հայրենիքի, մեր սիրասուն հայոց հող ու ջրի հանդեպ: Այդ սերն էր մեզ քաջություն ու կորով հաղորդել, եղել մեծ Հաղթանակի պատվարը:*

*Այսօր, 45 տարվա հեռավորությունից ենք գնահատում անցյալն ու ներկան: Շատ բան է փոխվել ու վերաիմաստավորվել: Եկել է նոր սերունդ, որը հաղթական ավարտին կհասցնի վերակառուցման գործը: Ես հավատում եմ այդ սերնդին, հավատում, որ վերակառուցման ալիքը կսրբի մեր կյանքը խոչընդոտող արգելքները: Իմ սերնդակիցների անունից չեմ կարող նաև չասել, որ վերակառուցման պրոցեսը դանդաղ է ընթանում: Եվ բյուրոկրատական քաշքշուկ, և վարչահրամայական ղեկավարման եղանակի մնացուկներ: Իսկ ամենից ավելի ինձ հոգեկան ցավ է պատճառում այն, որ մենք՝ վետերաններս, հաճախ մնում ենք կյանքի ստվերում: Շատ բան հարկավոր չէ այսօր մեզ, այլ մարդկային ուշադիր վերաբերմունք մեր առանց այդ էլ քիչ պահանջներին: Կարծում եմ, տեղական իշխանությունները ավելի մոտիկից պետք է զբաղվեն մեր սոցիալ-կենցաղային պայմանների բարելավման հարցերով:*

*Ցավոք... ժամանակն իր գործը տեսնում է, նոսրանում են մեծ Հայրենականի մասնակիցների շարքերը, ահեղ տարիների երիտասարդները դարձել են ալեհեր ծերունիներ:*

*Դիմելով երիտասարդությանը, գալիք սերունդներին, ուզում եմ ասել, որ այն, ինչ կատարվեց իմ հասակակիցների հետ, թող երբեք չկրկնվի:*

ՀԱԿՈԲ ՇԱՀՆԱԶԱՐՅԱՆ
Հայրենական պատերազմի հաշմանդամ,
աշխատանքի վետերան

կուսակցության հանդեպ, Խանջյանը ուղղակի հովանավորում էր հայ մտավորականության շրջանում եղած սանձազերծ նացիոնալիստական տարրերին», որոնք առաջ էին քաշել «ձևով ազգային և բովանդակությամբ ազգային» մշակույթի բանաձևը։ Խանջյանի «գործի» նյութերում կան նաև այսպիսի «մարգարիտներ». «Խանջյանի հետ Զորանյանի նամակագրության վերլուծությունը Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմի քարտուղարի պաշտոնում Խանջյանի պրակտիկ գործունեության զուգակցմամբ ցույց է տալիս, որ Խանջյանը Հայաստանի ազգային-կուլտուրական և տնտեսական շինարարության հարցերում եղել է Զորանյանի գործակալն ու նրա գծի կիրառողը»։ Խանջյանի «հակահեղափոխական» գործունեության բնագավառում մատնանշվում էր, որ նա «հոժարաձայնել էր Փարիզից Հայաստան փոխադրել վանական կոմպոզիտոր Կոմիտասի մասունքները» և «Զորավար Անդրանիկի՝ դաշնակցական հայտնի գործչի, ավազակի ու խմբապետի մարմինը»։ Զորանյանի 1936 թ. մայիսի 9-ի նամակում Անդրանիկը բնութագրվում էր որպես «իր ժողովրդի անկեղծ ու անշահախնդիր ծառա»։ Լռությամբ էին անցել նաև Զորանյանի այն հայտարարության կողքով, որ «Հայրենասեր հայությունը արտասահմանում Խորհրդային Հայաստանի ջերմ բարեկամն է»։ Խանջյանը մեղադրվում էր նաև այն բանում, որ պաշտպանում էր Ն. Ստեփանյանի խմբին, որը իր պլատֆորմում դնում էր 1920—1921 թթ. թույլ տրված տարածքային անարդարությունը շտկելու, Անին, Արարատը, Սուրմալուն, Կարսը, Լեռնային Ղարաբաղը, Նախիջևանը և մյուս վաղընջական հայկական հողերը Հայաստանին վերադարձնելու, Աղստաֆա-Երևան երկաթուղին կառուցելու հարցը։

Բերիան հարձակվում էր նաև Հայաստանի գծով կուսհանձնաժողովի քարտուղար Աղասի Գալոյանի վրա, որն իբր 1927 թվականից զբաղվում էր «տրոցկիստների ուղղակի հովանավորությամբ» և աջակցում էր «Ստեփանյանի հակահեղափոխական խմբին»։ Գալոյանը մեղադրվում էր նաև այն բանում, որ «Հայաստանի կոմկուսակցության շրջկոմների և քաղկոմների կողմից մերկացված հակահեղափոխական տրոցկիստներին վերականգնում էր կուսակցության մեջ, պաշտպանում էր նրանց»։

Բերիայի կողմից հետմահու Խանջյանի դեմ հարուցված մեղադրանքները կրկնվեցին ՀԿԿ Կենտկոմի 1936 թվականի սեպտեմբերյան պլենումում Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմի առաջին քարտուղար Ամատունու ելույթներում։ ԽՍՀՄ գլխավոր դատախազ Ռուդենկոյի 1956 թվականի հունվարի 13-ի գրության մեջ, որը հասցեագրված էր ԽՄԿԿ Կենտկոմի նախագահությանը, նշվում էր. «Բերիայի և Ամատունու ելույթից հետո կատարվեցին Հայաստանի կուսակցական և խորհրդային ղեկավար շատ աշխատողների, մտավորականների ու գիտնականների ձերբակալություններ՝ նացիոնալիստական, աջ տրոցկիստական կազմակերպություններին մասնակցելու համար, որոնք իբր գլխավորում էին Խանջյանը և Հայաստանի ժողկոմխորհի նախկին նախագահ Տեր-Գաբրիելյանը» (ՄԼԻ-ի Հայկական մասնաճյուղի ԿԱ, ֆ. 4033, ց. 5, պահպ. միավ. 319)։

Ստալինը և նրա մերձավորագույն շրջապատը, առաջին հերթին Բերիան, հաշվեհարդար էին տեսնում XVII համագումարում ընտրված կուսակցության Կենտկոմի և մյուս ղեկավար մարմինների անդամների, համագումարի պատվիրակների հետ, «ժողովուրդների առաջնորդին» լավ ճանաչող լենինյան գվարդիայի մարտիկների հետ, նրանցից շատերի մեջ տեսնելով անձնական թշնամու։

Գործի դրվեց՞ին զանգվածային ձերբակալությունները, մահվան դատավճիռները՝ անհապաղ կատարմամբ։ Վճռական և խորհրդակցական ձայն ունեցող 1961 պատվիրակից ժողովրդի թշնամիներ մեղադրանքով ռեպրեսիաների ենթարկվեցին և ոչնչացվեցին 1108-ը՝ համագումարի բոլոր պատվիրակների մոտ 55 տոկոսը, համագումարում ընտրված ՀամԿ(բ)Կ Կենտկոմի 139 անդամներից ու թեկնածուներից 93-ը՝ գրեթե 70 տոկոսը (Известия ЦК КПСС, 1989, № 3, с. 137)։

Վճռական ձայնի իրավունք ունեցող 1205 պատվիրակների 80 տոկոսը կուսակցության մեջ էր մտել հեղափոխական ընդհատակի և քաղաքացիական պատերազմի տարիներին՝ մինչև 1920 թվականը ներառյալ, 75 տոկոսը մասնակցել էր քաղաքացիական պատերազմին, 40 տոկոսը (497 մարդ) աշխատել էր կուսակցական մարմիններում, 10,2 տոկոսը (125 մարդ)՝ խորհրդային-վարչական մարմիններում, 10 տոկոսը (121 մարդ)՝ գյուղատնտեսության մեջ, 7,3 տոկոսը (90 մարդ)՝ զինվորական կազմակերպություններում, 6 տոկոսը (75 մարդ)՝ տրանսպորտում (XVII съезд ВКП (б), с. 302—304)։ Այս հուսալի և սոցիալիզմին նվիրված ուժի կեսից ավելին ոչնչացվեց։

Տխուր վախճան ունեցավ նաև հայազգի պատվիրակների ճակատագիրը։ Իսկ նրանք 59 հոգի էին՝ ընտրված Խորհրդային Միության կուսակցական 19 կազմակերպություններից։ Ներկա էին ևս երկու հրավիրված կոմունիստներ, որոնք աշխատում էին Միության կենտրոնական հիմնարկներում։ Նրանցից 59-ը ծնունդով Անդրկովկասից էին (17-ը ծնվել էր Հայաստանում, 21-ը՝ Վրաստանում, 10-ը՝ Բաքվում և Ադրբեջանում, 9-ը՝ Շուշիում, 2-ը՝ Նախիջևանում), մեկը ծնվել էր Թուրքիայում, մեկն էլ Պարսկաստանում։ Նրանք բոլորն էլ տարբեր ժամանակ աշխատել էին Անդրկովկասում և կուսակցական կադրերի տեղաբաշխմամբ աշխատանքի էին ուղարկվել Միության մյուս ռեգիոնները։



Հայաստանի կուսակցական կազմակերպությունը ներկայացված էր 15 պատվիրակներով, որոնցից 10-ը՝ վճռական ձայնով։ Մնացած 44 հայազգի պատվիրակները ընտրվել էին. 6-ական՝ Ազով-Սևծովյան և Վրացական կազմակերպություններից, 4-ական՝ Մոսկվայի և Դոնեցկի, 3-ը Ուզբեկական, 2-ական՝ Լենինգրադի, Խարկովի, Ադրբեջանի, Ղազախստանի, մեկական՝ Գորկու, Սարատովի, Սվերդլովսկի, Ուդմուրտիայի, Արևմտյան Սիբիրի, Մոլդավիայի կազմակերպություններից, ՀամԿ(բ)Կ Կենտկոմից և ԽՍՀՄ արտաքին գործերի ժողկոմատից, 5 պատվիրակ՝ ՀամԿ(բ)Կ ԿՎՀ-ից։ Վճռական ձայնի իրավունք ունեցող 50 պատվիրակներից 36-ը՝ 90 տոկոսը, ուներ նախահեղափոխական կուսակցական ստաժ, մասնակցել էր ընդհատակյա աշխատանքին և քաղաքացիական պատերազմին։ Խորհրդակցական ձայնի իրավունք ունեցող 19 պատվիրակներից նախահեղափոխական կուսակցական ստաժ ուներ 16 մարդ։ Նախահեղափոխական ստաժ ունեին բոլոր հրավիրված կոմունիստները։ Հայազգի պատվիրակների միջին տարիքը կազմում էր մոտ 35 տարի։ Նրանցից շատերը եղել են կուսակցության նախորդ համագումարների պատգամավորներ։ VI համագումարում՝ 1, X-ում՝ 7, XI—XII-ում՝ 6-ական, XIII-ում՝ 7, XIV-ում՝ 19, XV-ում՝ 24, XVI-ում՝ 22։ XVIII համագումարում (1939 թ.) նրանց թիվն իջավ մինչև 5-ի։

Մի վիճակագրություն ևս։ Պատվիրակներից 23-ը եղել են ԽՍՀՄ Կենտրոնական գործադիր կոմիտեի, 7-ը՝ ՌԽՖՍՀ Կենտգործկոմի, 19-ը՝ Անդրկովկասյան Կենտգործկոմի, 20-ը՝ հանրապետական Կենտգործկոմների անդամներ։ 29-ը սովորել էին Սվերդլովի անվան կոմունիստական համալսարանում, Կարմիր պրոֆեսուրայի ինստիտուտում, Արևելքի ժողովուրդների կոմունիստական համալսարանում, մարքսիզմ-լենինիզմի, ՀամԿ(բ)Կ Կենտկոմին առընթեր գավառային աշխատողների դասընթացներում և կուսակցական, խորհրդային այլ ուսումնական հաստատություններում։ Նրանցից 15-ը պարգևատրված են եղել Լենինի շքանշանով, 4-ը՝ Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով, 4-ը՝ Մարտական կարմիր դրոշի շքանշանով, 1-ը՝ Պատվո նշանով։

Բավական ընդարձակ ու ծանրակշիռ է եղել նրանց կուսակցական-պետական գործունեության աշխարհագրությունը։ Նրանցից վեցը տարբեր ժամանակ գլխավորել են հանրապետությունների կուսակցական կազմակերպություններ. Հայկազ Կոստանյանը, Աղասի Խանջյանը, Ամատունին՝ Հայաստանի, Լևոն Միրզոյանը՝ Ադրբեջանի և Ղազախստանի, Ռուբեն Մկրտչյանը (Ռուբենով)՝ Ադրբեջանի (Միրզոյանը և Ռուբենը միաժամանակ եղել են կուսակցության Բաքվի կոմիտեի առաջին քարտուղարներ), Սուրեն Շադունցը՝ Տաջիկստանի (եղել է նաև ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Միջինասիական բյուրոյի քարտուղար)։ Տասներկուսը եղել են կուսակցության կոմիտեների՝ Ղազախական երկրկոմի, Օրյոլի նահանգկոմի, Հարավ-Օսեթական, Աբխազական, Աջարական, Լեռնային Ղարաբաղի, Զեչենական (Գուրգեն Բուլատ, Ղարիբ Թովմասյան), Ուդմուրտական, Մոլդավական, Դոնեցկի, Ղրիմի մարզկոմների առաջին քարտուղարներ. երեքը՝ Կիրովի, Հեռավոր-Արևելյան երկրամասային կոմիտեների, Զելյաբինսկի մարզկոմի երկրորդ քարտուղարներ. երեքը՝ Անդրկովկասի, Նիժնե-Վոլժսկի (Ստալինգրադ) երկրկոմների քարտուղարներ. երեքը՝ Վրաստանի Կ(բ)Կ Կենտկոմի քարտուղարներ. երկուսը՝ Դաղստանի, Խարկովի մարզկոմի քարտուղարներ, յոթը՝ Արխանգելսկի, Վերխնե-Կամսկի (Սոլիկամսկ), Վորոնեժի, Սերպուխովի, Տամբովի, Պերմի, Դոնի, Մագնիտոգորսկի օկրուգկոմների առաջին քարտուղարներ. տասնչորսը՝ Սամարայի, Բաքվի (Սարգիս), Թիֆլիսի (Ստ. Վարդանյան, Ե. Ասրիեևով, Ռուբեն, Գ. Հարությունով), Վլադիվոստոկի, Պերմի, Պենզայի, Ստալինյան (Նովոկուզնեցկ՝ Ր. Խիտարով, Գ. Բուլատ), Տագանրոգի, Շախտիի քաղկոմների պատասխանատու և առաջին քարտուղարներ. հինգը՝ Մոսկվայի, Լենինգրադի, Բաքվի, Թիֆլիսի, Շախտիի քաղկոմների քարտուղարներ. տասնհինգը՝ կուսակցության շրջկոմների քարտուղարներ՝ քաղաքային (Յարոսլավլ), Կրասնոլուչի, Լիսիչանսկի (Դոնբաս), Բեժեցկի (Բրյանսկի նահանգ), Լաբինսկի, Արմյանսկի (Հյուսիսային Կովկաս), Բերեզնիկիի, Օկտյաբրսկի, Ֆրունզեի (Մոսկվա), Մոսկվա-Նարվայի, Կույբիշևի (Լենինգրադ), Ստալինի, Կիրովի, 26 կոմիսարների անվան (Թբիլիսի), Բիբի-էյբաթի, Բայիլովի, Բալախանի, քաղաքային (Բաքու), Մանգլիսի, Սուրամի, Աղբուլաղի (Վրաստան) շրջկոմների առաջին քարտուղարներ։

Կուսակցական շատ աշխատողներ ղեկավարել են շրջկոմների, քաղկոմների, մարզկոմների, երկրկոմների, կենտկոմների կազմակերպական բաժիններ։ Պատվիրակներից ինը գլխավորել են երկաթուղիների քաղաքական բաժիններ երկրի տարբեր ռեգիոններում. Հարավային (Խարկով), Հարավ-արևմտյան (Կիև), Լուգանսկի (Լուգանսկ), Դոնեցկի (Արտեմովսկ, Կրասնի Լիման), Կիրովյան (Լենինգրադ), Մոսկվա-Կուրսկյան (Մոսկվա), Հյուսիս-Կովկասյան (Կավկազսկայա կայարան), Անդրկովկասյանի Հարավային գծի, Պերմի (Սվերդլովսկ), Տոմսկի (Նովոսիբիրսկ), Արևելա-Սիբիրյան (Օմսկ), Միջին-Ասիական (Տաշքենդ)։ Կորպուսի հրամանատար Գրիգորի Խախանյանը ղեկավարում էր Ուկրաինական զինվորական օկրուգի քաղաքական բաժինը։

Շատերը կատարում էին պատասխանատու

Մաշտոցը ժողովրդին օժտեց սեփական մշակույթի և ազգային ինքնագիտակցության պահպանման հզոր զենքով՝ հնարավորություն ընձեռելով բանավոր խոսքի երերուն վիճակից գրավոր խոսքի հաստատուն հենքի վրա փոխադրելու անցյալի հոգևոր ժառանգությունը: Խորենացին վեր հանեց ժողովրդի համապարփակ պատմական կերպարը՝ բացահայտելով նրա ակունքները, դրվատելով անցյալի փառապանծ էջերը և վեհ գործիչներին, նրան ուժ ու վստահություն հաղորդեց պատմության քառուղիներում:

Ըստ առկա տվյալների, Պատմահայրը ծնվել է մոտ 410 թվականին: Մեսրոպ Մաշտոցի և կաթողիկոս Սահակ Պարթևի մոտ նախնական կրթություն ստանալուց հետո, նա 20—25 տարեկան հասակում, գիտելիքները խորացնելու նպատակով, աշակերտների մի խմբի հետ ուղևորվում է դեպի հին աշխարհի կրթական խոշորագույն կենտրոններից մեկը՝ Ալեքսանդրիա: Ճանապարհին նրանք այցելում են ասորական Եդեսիա (Ուռհա) քաղաքը և ծանոթանում նրա հարուստ դիվանի հետ: Մի քանի տարի անց, Ալեքսանդրիայում ուսումն ավարտելուց հետո, Մովսես Խորենացին վերադառնում է հայրենիք: Ինչպես երևում է, հայոց գրերի գյուտի հարուցած ոգևորությունն արդեն բավական մարել էր, և նրան սառն ընդունելություն էր սպասում: Չնայած ծանր պայմաններին, Խորենացին լայն լուսավորչական գործունեություն ծավալեց. զբաղվում էր թարգմանչական աշխատանքով, շարադրում ինքնուրույն գործեր:

«Հայոց պատմությունը», Սահակ Բագրատունի իշխանի պատվերով, նա սկսեց շարադրել արդեն առաջացած տարիքում և ավարտեց, հավանաբար, մահվանից (490 թ.) քիչ առաջ: «Փիլիսոփոս Մովսեսը», ինչպես կոչում է նրան ժամանակակից Ղազար Փարպեցին, մինչև մահ չազատվեց հոգևորականության տգետ մասի հալածանքներից: Մահվան նախօրեին, հաղորդում է Ղազար Փարպեցին, նա դառնացած նզովել է բարձրաստիճան հոգևորականներին: Այդ տողերը, հավանաբար, մեզ են հասել «Հայոց պատմությունը» եզրափակող նշանավոր «Ողբում». «Կրոնավորները՝ կեղծավոր, ցուցամոլ, սնափառ, պատվասեր, քան աստվածասեր: Վիճակավորները՝ հպարտ, դատեր սիրող, դատարկախոս, ծույլ, գիտություններն ու վարդապետական գրվածքներն ատող, առևտուր և կատակերգություններ սիրող» (III, 68):

Հայոց պատմությունը ի սկզբանե մինչև իր օրերը շարադրելու աննախադեպ գաղափարը Խորենացուն նույնքան աննախադեպ դժվարությունների առջև էր կանգնեցնելու այնպիսի աղբյուրների փնտրման առումով, որոնց կարելի էր դիմել իրենից 500, 1000 տարի առաջ և նույնիսկ ավելի վաղ տեղի ունեցած իրադարձությունները, երևույթները լուսաբանելիս:

Ի՞նչ սկզբնաղբյուրներ են հիմք ծառայել «Հայոց պատմության» ստեղծման համար:

Նախ դիմենք գրավոր պատմողական աղբյուրներին: Մովսես Խորենացին հայ պատմագրության մեջ սկիզբ դրեց, որպես պատմական սկզբնաղբյուր, օտար մատենագրություններին պատկանող երկերի, և առաջին հերթին Աստվածաշնչի, օգտագործմանը: Աստվածաշնչին հաջորդում է մինչքրիստոնեական և քրիստոնեական հեղինակների երկար շարքը՝ Հովսեպոս Փլավիոսից մինչև Եվսեբիոս Կեսարացի: Որոշ նշանավոր անտիկ հեղինակներ (Պոլիբիոս, Ստրաբոն, Ամմիանոս Մարկելինոս), ցավոք, դուրս են մնացել Պատմահոր տեսադաշտից: Օգտագործած ծավալուն օտարալեզու մատենագրությունից Խորենացին, թերևս, տվյալներ է քաղել ոչ այնքան Հայաստանի, որքան հարևան և հեռավոր երկրների մասին: Համաշխարհային պատմությանը նրա քաջատեղյակությունը ակնբախորեն երևում է «Հայոց պատմության» բազմաթիվ էջերից:

Առանձնահատուկ բնույթ է կրում Խորենացու հիշատակած երեք պատմողական աղբյուրի՝ Մար Աբաս Կատինայի աշխատության, չորս մասից բաղկացած, հավանաբար, «Հյուսումն պիտոյից» կոչված երկի և «Մեհենական պատմությունների» խնդիրը: Այդ աշխատությունները թեև գրվել են օտար լեզուներով, սակայն ստեղծվել են Հայաստանում:

Մար Աբաս Կատինան այլուր հանդես է գալիս նաև որպես Մարաբա Մծուրնացի: Նրա աշխատությունից օգտվել է նաև VI դարի բյուզանդական հեղինակ Պրոկոպիոս Կեսարացին: Մծուրնացի մատենագիրը մ. թ. III—IV դարերի հեղինակ է:



Լինելով ծագումով ասորի և անկասկած գիտենալով մայրենի լեզուն, նա եղել է հայկական Մծուրք քաղաքի բնակիչ, ուրեմն՝ գիտակ նաև հայերենի, սակայն իր աշխատությունը գրել է հունարեն: Մար Աբասի երկը պարունակել է հին հայոց առասպելների գրառումներ, հիմնված է եղել նաև գրավոր աղբյուրների (այդ թվում և վավերագրերի) վրա, որոնցից էլ հեղինակը տեղեկություններ է քաղել պարթև ու հայ Արշակունիների մասին:

Քառամաս «Հյուսումն պիտոյից» աշխատությունից, որի հեղինակի անունը Մովսես Խորենացին չի հիշատակում այն հանրահայտ համարելով, նա, հավանաբար, հիմնականում քաղել է Տիգրան Մեծի (մ. թ. ա. 95—55) ներբողյանը, հորինված հունական ներբողագրության կանոններով:

Վերջապես, «Մեհենական պատմությունների» մասին: Ըստ Մովսես Խորենացու, դրանց երկու մասերից առաջինի հեղինակը Եփրատի ափին գտնվող Անի ամրոցի Արամազդ աստծո տաճարի Ողյումպ (Օլյումպիոս) քուրմն էր, երկրորդինը՝ քարոզչական առաքելությամբ Հայաստան (Անի) այցելած ասորի մատենագիր Բարդածանը (II—III դարեր): Ակնառու է այն հարազատությունը, որը առկա է, մի կողմից, Արտաշես I-ի (մ. թ. ա. 189—160) մասին դրանցում պահպանված տեղեկությունների և, մյուս կողմից, այդ արքայի արամեերեն արձանագրություններով օժտված սահմանաքարերի, հույն-հռոմեական հեղինակների և առանձնապես Ստրաբոնի, հաղորդած ստույգ տվյալների միջև: Ողյումպի և Ստրաբոնի մի քանի տվյալների նմանության աստիճանն այնքան ակնհայտ է, որ որոշակի հիմք է տալիս ենթադրելու, թե դրանք ծագում են, թեև միջնորդված ձևով, մի ընդհանուր աղբյուրից, ինչպիսին կարող էր լինել, օրինակ, հայոց արքա Արտավազդ II-ի (մ. թ. ա. 55—34) գրած Պատմությունը:

«Հայոց պատմությունում» օգտագործված են նաև վավերագրական նյութեր: Այդպիսիք են զանազան լեզուներով գրված այն վիմագիր հուշարձանները, որոնք գտնվել են հեղինակի տեսադաշտում, ինչպես նաև հայ Արշակունիների «Գահնամակները»: Դրանցում, ըստ իրենց հզորության և ազդեցության, հերթականորեն թվարկված էին բոլոր նախարարական տոհմերը:

«Հայոց պատմության» էջերում մեջբերված բազմաթիվ նամակները, թագավորների և այլևայլ գործիչների ուղերձներն ու ճառերը վավերագրեր չեն, սակայն հարազատորեն արտացոլում են պատմական միջավայրը: Պատմության շարադրման այդ ոճը բավականաչափ տարածված է եղել հին և միջնադարյան պատմագրության մեջ:

Անդրադառնանք «Հայոց պատմության» աղբյուրների մյուս տեսակներին: Գրավոր աղբյուրներին հաջորդում են բանավորները: Խոսքը գլխավորապես վերաբերում է այն ժողովրդական ստեղծագործություններին, որոնց հեղինակն անձամբ ականջալուր է եղել: Կարելի է տարբերակել բանավոր աղբյուրների երեք խումբ: Առաջինն առասպելներն են, որոնցից մեզ է հասել Վահագն աստծո ծննդին նվիրված հիմնից մի հատված, երկրորդը՝ պատմական ավանդությունները, «Վիպասանների երգեր», «Թվելյաց երգերը», որոնք ավելի մեծ թիվ են կազմում: Այստեղ միահյուսված են պատմականն ու առասպելականը: Հատվածներ են պահպանվել «Արտաշես և Սաթենիկ» վիպական շարքից, Արգավան վիշապի, Արտավազդի, Վարդգես մանկան մասին ստեղծագործություններից: Երրորդը տոհմական ասքերն են, որոնք երգվում կամ պատմվում էին նախարարական տոհմերում, սերնդեսերունդ հետզհետե հարստանալով ու գունազարդվելով: Դրանցում հիշատակվում էին տոհմի ծագումը, նրա նշանավոր ներկայացուցիչների լավ կամ վատ գործերը և այլն: Այդպիսի տոհմական ասք է, օրինակ, Չինաստանից Մամիկոնյան տոհմի նախնիների գալստյան մասին ավանդությունը: Խորենացին լայնորեն օգտագործել է ժողովրդական ստեղծագործության երեք ձևն էլ, սակայն քննադատաբար է մոտեցել դրանց: Նա առասպելական տարրերը որպես այլաբանություն է ընկալել և ձգտել է վերլուծության միջոցով բացահայտել դրանց բանական հիմքերը: Օրինակ, նա մեջբերում է Արտաշեսի և Սաթենիկի հարսանիքի մասին ժողովրդական ավանդության խոսքերը. «Ոսկի տեղ էր տեղում Արտաշեսի փեսայության ժամանակ, մարգարիտ էր տեղում Սաթենիկի հարսնության ժամանակ» և ավելացնում. «Որովհետև մեր թագավորները սովորություն ունեին՝ իբրև փեսա դահլիճի դուռը հասնելիս դրամներ շաղ տալ հռոմայեցիների հյուպատոսների նման: Նույնպես և թագուհիները առագաստի սենյակում՝

մարգարիտ: Երգի իսկական իմաստն այս է»: Այսպես է նա վարվում նաև բազում այլ դեպքերում:

Աղբյուրների այլ տեսակ են ներկայացնում նյութական մշակույթի հուշարձանները՝ քաղաքները, ամրոցները, տաճարները, բնակավայրերը, ջրանցքները և այլն: Պատմահայրը ուշադիր ուսումնասիրել է դրանք կամ դրանց ավերակները, հավաքել է համապատասխան ավանդությունները: Այսպիսի հետազոտության արդյունք են «Հայոց պատմության» մեջ էական տեղ գրավող համապատասխան նկարագրությունները:

Մովսես Խորենացին լրացուցիչ աղբյուր է ձեռք բերել, դիմելով հայոց լեզվի բառագանձի և հատկապես հատուկ անունների՝ պատմական կամ իրեն ժամանակակից տեղանունների, անձնանունների, տոհմանունների ստուգաբանական վերլուծությանը: Վերլուծությունը կատարվել է «ժողովրդական» ստուգաբանության եղանակով:

Ընդհանուր հայացք գցելով Մովսես Խորենացու օգտագործած աղբյուրների կազմի վրա, կարելի է զարմանալ, թե որքան բազմազան ու տարաբնույթ են դրանք եղել: Դեռևս V դարում նա պրպտել և «Հայոց պատմության» մեջ օգտագործել է սկզբնաղբյուրների ըստ էության այն բոլոր տեսակները, որոնց վրա հիմնվում են և ժամանակակից պատմաբանները:

Այս ամենն ինքնին դուրս են բերում Պատմահորը մեր համար սովորական «պատմիչ» բնութագրման, ինչպես նաև միջնադարյան հայ հեղինակների շրջանակներից և նրա համար պատվավոր տեղ ապահովում համաշխարհային մշակույթի գործիչների շարքում:

Վաղ միջնադարյան մատենագրության և պատմագրության այս բացառիկ հուշարձանի հետազոտության պատմությունը արտասովոր բարդ է ու դրամատիկ:

Մինչև XIX դարի կեսերը, սակավ բացառություններով, գերակշռում էր «Հայոց պատմության» նկատմամբ վաղ միջնադարի վերջում՝ IX—X դարերում ծագած անքննադատ ակնածանքը: Պատմությունը վերածվել էր դասագրքի ընդօրինակման համար կատարելատիպի, միջնադարյան Հայաստանում հետագայում շարադրված բոլոր պատմական երկերի համապատասխան մասերի հիմքի և սկզբնաղբյուրի:

XIX դարի 70-ական թվականներին դրությունը փոխվում է: Դարավերջը և ներկա հարյուրամյակի սկիզբը դասական բանասիրության մեջ գերքննադատության տարածման ժամանակաշրջան էին, որից հանիրավի տուժեցին բազմաթիվ հունահռոմեական հեղինակներ: Գերքննադատությունը տատանեց նաև Մովսես Խորենացու Պատմության հեղինակությունը: Քննադատության տեղիք տվեցին այն ակընհայտ հակասությունները, որ գոյություն ունեին մի կողմից, հունա-հռոմեական աղբյուրների, մյուս կողմից, Մովսես Խորենացու հաղորդումների միջև:

Այնուհետև, «Հայոց պատմությունում» հայտնաբերելով այնպիսի տեղեկություններ, որոնք քննադատների կարծիքով կարող էին քաղվել միայն VII և հաջորդ դարերի աղբյուրներից, գերքննադատները սկսեցին պնդել, թե Խորենացին, իրեն ներկայացնելով V դարի պատմիչ, թաքցրել է իր իսկական ժամանակը և այլն: Մեղադրանքներն անում էին բարձունքից գլորվող ձնագնդի նման և իրենց բարձրակետին հասան XIX—XX դարերի սահմանագծում: Թեև վերջին տասնամյակներին դրանք դադարել են, առանձին պոռթկումներ դիտվում են նաև մեր օրերում:

Այդ ելույթներին հարկ չկա միանշանակ բացասական գնահատական տալ: Դրանք բերեցին նաև իրենց օգուտը, վեր հանելով Խորենացու աշխատության բազմաթիվ հետաքրքրական ու հատկանշական մանրամասներ, բացահայտելով այն ամենն, ինչը կարելի է դասել շեղումների, ժամանակագրական վրիպումների, մակաշերտված նյութերի թվին: Հետազոտողները, սակայն, տարվելով քննադատությամբ, չկարողացան հաղթահարել իրենց իսկ ժողոված արժեքավոր փաստական նյութը, ի վիճակի չեղան ըմբռնելու այդ նյութի իրական դերը «Հայոց պատմության» մեջ և իսկական նշանակությունը աշխատության ուսումնասիրման գործում: Նրանք չփորձեցին թափանցել հեղինակի ստեղծագործական աշխատանոցը, մեկնաբանել փաստերը Պատմության համակարգային կառուցվածքի հայեցակետից, առանց որի անհնարին է հասկանալ և գնահատել այդ աշխատությունը: Ողջ ուշադրությունը սևեռելով Պատմության շեղումներին և քամահրանքով վերաբերելով արժեքավոր նյութերին, քննադատամոլությամբ տառապող հետազոտողները բացահայտ



չափազանցությունների մեջ էին ընկնում: Մի խոսքով, նրանք շատ հեռու էին այդ հուշարձանի էության մեջ խորամուխ լինելուց, կանգնած էին նրա քննական յուրացման սոսկ առաջին աստիճանին:

Քննական յուրացման հաջորդ փուլը բնութագրվում է քննադատամոլությունից հրաժարումով: Տեղի ունեցավ գիտական միասնական խնդրի երկատում՝ Պատմահոր ժամանակի հարցը առանձնացվեց նրա աշխատության պատմագիտական արժեքի խնդրից: Տարբեր կերպ մեկնաբանելով առաջին հարցը, հետազոտողները համամիտ էին «Հայոց պատմության» որպես պատմական աղբյուրի բացառիկ կարևորության ընդունման հարցում (նրա գրական արժանիքները երբևիցե որևէ մեկը կասկածի տակ չի առել):

Վերջին տասնամյակների ընթացքում «Հայոց պատմության» քննական հետազոտության մեջ նշմարվում է յուրացման երրորդ աստիճանը, այն է՝ Խորենացու տեղեկությունները հանգամանորեն ուսումնասիրվում են դրանց պատմական հավաստիության աստիճանի որոշման տեսանկյունից: Այդ ուսումնասիրությունները հաջողությամբ են պսակվել. հաստատվել են «Հայոց պատմության» վերաբերյալ տասնյակ այնպիսի տեղեկություններ, որոնք նախկինում անհիմն կամ կասկածելի էին համարվում: Այդ հաջողությունը պայմանավորված է հետազոտական ճիշտ եղանակներով. նախ՝ ըստ էության նկատի են առնվում նախկինում արված քննադատական դիտողությունները, ապա՝ յուրաքանչյուր փաստի հավաստիությունն ապացուցելիս Խորենացու տվյալները համակողմանիորեն ստուգվում են սեպագիր ու հունա-հռոմեական աղբյուրներով, հնագիտական, վիմագրական, ազգագրական և լեզվաբանական նյութով: Ուշագրավ է, որ հնագիտական գրեթե ամեն մի հայտնագործություն հաստատում է «Հայոց պատմության» որևէ տեղեկություն:

Մովսես Խորենացու աշխատությունը Հայաստանի և հարևան երկրների հնագույն պատմության վերաբերյալ տեղեկությունների անսպառ գանձարան է: Փաստորեն այն հայ ժողովրդի ծագման, ազգային ավանդության միակ շարադրանքն է: Հայկական պետականության սկզբնավորման մասին ազգային ավանդությունը ևս պահպանվել է միայն Խորենացու «Հայոց պատմությունում»: Ընդ որում, այն առավել մեծ չափով, քան նախորդ ավանդությունը, խաչաձևվում է հնագույն աղբյուրների հետ և լրացնում նրանց տեղեկությունները: Հարկ է ընդգծել, որ «Հայոց պատմության» տեղեկությունների մեծ մասը վերաբերում է հայ ժողովրդի պատմության առավել մութ, այլ աղբյուրներով չլուսաբանվող բնագավառներին ու ժամանակաշրջաններին: Օտար, հատկապես անտիկ աղբյուրները կարծես արտաքուստ են լույս սփռում Հայաստանի պատմության վրա, այն էլ՝ դեպքից դեպք, երբ խաչաձևվում են նրա ու հարևան պետությունների ուղիները: Տեղեկությունները վերաբերում են գլխավորապես ռազմական բախումներին, դիվանագիտական հարաբերություններին և այլն: Խորենացին, ամենևին մոռացության չտալով պատերազմներն ու դիվանագիտական առնչությունները, կարծես ներքուստ է լուսաբանում Հայաստանի պատմությունը:

Մովսես Խորենացին, սկսելով ժողովրդի ծագումից, շարադրում է Հայաստանի պատմությունը մինչև հայ Արշակունիների թագավորական տան անկումը: Այդ վիթխարի պատմաշրջանի նրա առաջարկած պարբերացումն ընկած է նաև այժմյան գիտական պարբերացման հիմքում: Այսպես, եթե աշխատության սկիզբն ու վերջն են ժողովրդի ծագումը և նրա հին պետականության անկումը, ապա առաջին և երկրորդ գրքերի սահմանագիծ է ծառայում Ալեքսանդր Մակեդոնացու ժամանակաշրջանը: Համաշխարհային պատմության կարևոր ուղենիշը՝ Ալեքսանդր Մակեդոնացու նվաճումները, որոնք սկիզբ դրեցին հելլենիզմի՝ մարդկության արևմտյան և արևելյան հատվածների միջև աղերսների աննախադեպ արդյունավետացման, նրանց տնտեսական ու մշակութային փոխարգասավորման, մարդկության զարգացման ընթացքի նկատելի արագացման դարաշրջանին, դարակազմիկ նշանակություն ունեին Մովսես Խորենացու աչքում նաև Հայաստանի պատմական զարգացման տեսանկյունից: Երկրորդ և երրորդ գրքերի սահմանաբաժան է ծառայում Տրդատ III Մեծի օրոք, IV դարի սկզբում հայոց դարձը՝ քրիստոնեության ընդունումը: Առաջին հայացքից կարող է թվալ, թե այդ իրադարձությունը թեև կարևոր, այնուամենայնիվ տեղական նշանակություն ուներ: Սակայն IV դարի սկիզբը նաև ամբողջ միջերկրա-

ծովյան շրջանում քրիստոնեության հաղթահանդեսի ժամանակաշրջան էր, փաստորեն նրա՝ համաշխարհային կրոնի վերածվելու փուլ: Ավելին, մի կրոնից մյուսին անցնելու գաղափարախոսական վերակառուցման ներքո քողարկված էր անցումը նոր սոցիալ-տնտեսական հասարակարգի՝ ավատատիրությանը: Մովսես Խորենացին, ինչպես տեսնում ենք, իրոք իր երկրի պատմությունը դիտարկում էր համաշխարհային պատմության ֆոնի վրա:

«Չկա ճշմարիտ պատմություն առանց ժամանակագրության»,— գրում է Խորենացին, այս առումով էականորեն տարբերվելով վաղ միջնադարի մյուս հայ պատմիչներից, որոնք զանազան չափով, բայց բավականին անհոգ են եղել ժամանակագրության հարցում: Պատմության ժամանակագրությունը հայ միջնադարյան պատմագրության խոշորագույն նվաճումներից է: Հայ իրականության մեջ առաջին անգամ Պատմահայրը համաժամանակեցման համակարգ է մշակել որոշակի ժամանակաշրջանի համար, որը մի քանի զուգահեռ շարքերի վրա է հիմնված:

Հայկ, Արամ, Արա Գեղեցիկ, Տորք, Աստղիկ անունները ու դրանց հետ կապված առասպելները ու զրույցները հայերի հեթանոսական կրոնի և հավատալիքների հնագույն շերտերի այն նմուշներն են, որոնք ցույց են տալիս, որ մինչև իրանական դիցանունները կրող Արամազդից, Վահագնից, Անահիտից, Միհրից և ուրիշներից կազմված հայ հեթանոսական դիցարանը, հայերն ունեցել են իրենց նախնական, ավելի հին դիցարանը: Այն հայերի հնագույն և ինքնատիպ հոգևոր մշակույթի,— որը սերտ առնչություն ուներ հինարևելյան՝ ուրարտական, խեթական, ասորեստանյան մշակույթների հետ,— արգասիքներից էր: Եթե չլիներ Մովսես Խորենացին, մենք գրեթե ոչինչ չէինք իմանա այդ մշակույթի մասին:

Ոչ պակաս, և թերևս ավելի մեծ, կարևորություն են ներկայացնում Խորենացու շնորհիվ պահպանված ժողովրդական բանավոր ստեղծագործության այն նմուշները, որոնք ցույց են տալիս, թե մինչև «Սասնա ծռեր» ժողովրդական վեպը Հայաստանում գոյություն ունեին ուրիշ, ավելի հին վիպական շարքեր: Պատմահայրը դրանցից օրինակներ է բերում այնպես, ինչպես որ լսել է գուսաններից: Ընդսմին, հարկ է ընդգծել, որ այդ ստեղծագործությունները՝ Վահագնի ծննդի, Արտաշեսի ու Սաթենիկի, Արտավազդի մասին երգերը և ուրիշներ, երևան են հանում ոչ միայն ժողովրդական բանավոր ստեղծագործության ձևն ու բովանդակությունը, այլև, որ առանձնապես կարևոր է, մինչգրական ժամանակաշրջանի, այսինքն՝ նախքան մ. թ. V դարը կիրառված հայերեն խոսակցական լեզվի նմուշներ են:

Բանավոր ստեղծագործությունը, ժողովրդական հիշողությունը թեև խիստ կարևոր, բայց, այնուամենայնիվ, միակ ուղին չէին «Հայոց պատմության» հեղինակին խոր հնադարի մասին տեղեկություններ հաղորդելու համար: «Հայոց պատմությունը» բավականաչափ տվյալներ է պարունակում նաև տեղական գրավոր ուղիները, առաջին հերթին պատմական մտքի զարգացման շղթան վերականգնելու համար: Պատմական երկերը Հայաստանում շարադրվում էին օտար լեզուներով, բայց տեղական հիմքի վրա և դրանով իսկ հայկական էին: Այդ շղթայի մի շարք օղակներ՝ «Մեհենական պատմությունները»— «Հյուսումն պիտոյիցը»— Մար Աբաս Կատինայի աշխատությունը, ստեղծվել էին Արշակունիների հարստության կառավարման (մ. թ. I—IV դարեր) ընթացքում: Եթե սրան ավելացնենք անտիկ հեղինակների մեզ հայտնի տվյալներն այն մասին, որ Հայաստանի պատմության վերաբերյալ աշխատություններ էին ստեղծվել տեղում դեռևս Արտաշեսյանների հարստության դարաշրջանում՝ Տիգրան II-ի (մ. թ. ա. 95—55) օրոք Մետրոդորոս Սկեպսիացու և Ամփիկրատես Աթենացու, իսկ Արտավազդ II-ի (մ. թ. ա. 55—35) օրոք՝ հենց այդ արքայի կողմից, ապա այս շղթան ոչ միայն էականորեն կերկարի, այլև կճյուղավորվի երկու զուգահեռ գծերի՝ արքունի և մեհենական պատմագրությունների: Շղթան ձգվում է հելլենիստական դարաշրջանից մինչև վաղ միջնադար և ակնհայտորեն հավակնում է համարվելու V դարի հայ պատմագրության նախորդը ու նրա բուռն ծաղկման նախադրյալներից մեկը:

Մովսես Խորենացու տվյալները վեր են հանում Հայաստանի հեթանոսական տաճարների դերը գրավոր մշակույթի ստեղծման և պահպանման գործում: Այդ դերը համադրելի է, մի կողմից, նախորդ, հինարևելյան, մյուս կողմից՝ հետագա, քրիստոնեական տաճարների՝ գրավոր մշակույթի կրողների ու կենտրոնների գործունեության հետ: Այսպիսով բացահայտվում է մշակութային ավանդների հաջորդականությունը առաջավոր Ասիայի տարածաշրջանում բազում հազարամյակների ընթացքում:

«Հայոց պատմությունում» պահպանված մշակութային արժեքների քննությունը թերի կլիներ առանց հիշատակելու, թե ինչ է հաղորդում աշխատությունը հարևան և հեռավոր երկրների պատմության մասին: Այդ ամենի թվարկումն այստեղ անհնարին է, ուստի և մենք կսահմանափակվենք հարևան Իրանի մասին առկա բազմաթիվ տեղեկություններից ընտրված օրինակներով: Բավական է ասել, որ Սասանյան Իրանում կորցված Արշակունյաց ավանդույթը (այդ երևույթը գիտության մեջ կոչվում է «Արշակունյաց բացում») շարունակվում էր պահպանվել Հայաստանում և հանդես է գալիս «Հայոց պատմության» մեջ, հանգամանք, որը բարձրացնում է նրա՝ որպես պատմական աղբյուրի, հեղինակությունը:

«Հայոց պատմությունը» էլ ավելի կարևոր տվյալներ է պարունակում Իրանի պատմության սասանյան ժամանակաշրջանի վերաբերյալ: Հատկապես ուշագրավ են իրանական բանահյուսության այն տվյալները, որոնք ավելի վաղ են հավաքվել ու գրի առնվել Խորենացու կողմից, հետևաբար առավել հին տեսք ունեն, քան Իրանում գրի առնված նյութերը: Պատմահայրը Ռուստամ Զալին (Սագճիկ) մի քանի դար ավելի վաղ է հիշատակում, քան Ֆիրդուսին նրան իր «Շահնամեի» հերոս կդարձներ: Նույնպիսին է իրավիճակը նաև իրանական բանահյուսական մյուս կերպարների՝ Հրուդենի (Ֆերիդուն), Բյուրասպի Աժդահակի հարցում: Մովսես Խորենացին մեզ է հասցրել նաև վերջինիս ուտոպիական գաղափարները. «Կամենում էր ցույց տալ, որ ամենքը պետք է ընդհանուր կենցաղ ունենան. նա ասում էր, թե ոչ ոք չպետք է առանձին (սեփական) բան ունենա, այլ ամեն ինչ ընդհանուր պետք է լինի: Նրա ամեն մի խոսքը, ամեն մի գործը հայտնի էր. ոչ մի բան ծածուկ չէր մտածում, այլ սրտի բոլոր գաղտնի խորհուրդները լեզվովն արտահայտում էր. և սահմանում էր, որ բարեկամները նրա մոտ ելմուտ անեն ինչպես ցերեկով, այնպես էլ գիշերը: Եվ այս է նրա այսպես կոչված անբարի քարերարությունը»: Կարելի է զարմանալ, թե որքան արդիական են այստեղ շարադրված հնագույն և հավերժ նոր դրույթները և որքան զգաստ է Պատմահոր՝ դրանց տված գնահատականը:

Իրանական աշխարհը, սակայն, բոլորովին էլ միակ ոչ հայկական ոլորտը չէ, որի մասին տեղեկություններ է հաղորդում Մովսես Խորենացին: Խիստ կարևոր են նաև հարևան Վրաստանի ու Աղվանքի, ինչպես և Ասորիքի, Հյուսիսային Կովկասի, Միջին Ասիայի, Փոքր Ասիայի պատմությանը վերաբերող տվյալները: Որոշակի հետաքրքրություն են ներկայացնում նաև նրա տեղեկությունները Հին Հռոմի, Սելևկյան տերության, Հին Հունաստանի, Պաղեստինի, Ուրարտուի, Ասորեստանի, Բաբելոնի մասին:

Ամփոփելով կարելի է ասել, որ Մովսես Խորենացին պահպանել և մեզ է հասցրել մինչքրիստոնեական հայկական քաղաքակրթությունը և հին աշխարհի մյուս քաղաքակրթությունների հետ նրա կապերը հատկանշող բազում տվյալներ:

«Հայոց պատմությունը» նաև աչքի ընկնող գրական հուշարձան է, հայ միջնադարյան արձակի լավագույն նմուշներից մեկը: Նրա լեզուն V դարի ոսկեղենիկ հայերենն է՝ սակավ չափով ենթարկված հունաբան դպրոցի ազդեցությանը: Մովսես Խորենացու լեզուն աչքի է ընկնում բազմազանությամբ և, կարծես թե, հակադիր հատկանիշներով, որոնք հարկ եղած տեղերում արտահայտվում են անհրաժեշտ և պատշաճ չափով: Այդ լեզուն հարուստ ու պերճ է, միաժամանակ՝ զուսպ: Երբեմն վերամբարձ է, բայց միշտ՝ ճշգրիտ, հանդիսավոր է ու պարզ, կոթողային է ու ճկուն՝ պայմանավորված հանգամանքներով ու նկարագրության առարկայով, և կատարելապես արտահայտում է թե առարկայականը և թե վերացականը:

Մովսես Խորենացու նկարագրությունները ցայտուն են ու ընդգրկուն, պատկերված գործողություններին ականատես լինելու տպավորություն են ստեղծում, թեև աչքի են ընկնում իրենց սեղմությամբ:

Պետական գործիչների նրա կերտած կերպարները զարմանալիորեն կենդանի են և հոգեբանորեն իրական: Այն աստիճան, որ ասես մեր ժամանակակիցներն են: Մեջբերենք մի հատված, որտեղ բնութագրվում է Երվանդ արքան: Մի կողմից, նա բռնակալ է, օրինական գահաժառանգի մահն է տենչում, այնպիսի «չար աչք» ունի, որ նրա հայացքից փշրվում են որձաքարերը: Մյուս կողմից, նա հմուտ կառավարիչ է, մեծ շինարար, որը նոր մայրաքաղաք և կուռքերի քաղաք է կառուցել, հիմնադրել է ծննդոց անտառը և այլն: Մի խոսքով, Երվանդը բարդ խառնվածք ունեցող անձ-

նավորություն է: Տեսնենք, թե ինչպես է նա վարվում ծայրահեղ իրադրությունում, երբ օրինական գահաժառանգը օտար զորքերով Հայաստան է ներխուժել ու մահու և կենաց ճակատամարտ է սպասվում: «Երվանդն ավելի առատացնում էր պարգևները և ամեն մեկին բաժանում էր գանձերը. և որքան շատ էր տալիս, այնքան ավելի ատելի էր դառնում, որովհետև բոլորն էլ գիտեին, թե առատաձեռնությունից չէ, որ տալիս է, այլ երկյուղից վատնում է: Եվ այնքան սիրելի չէր դարձնում նրանց, որոնց շատ էր տալիս, որքան թշնամի էր դարձնում նրանց, որոնց այնքան առատ չէր տալիս»:

«Հայոց պատմության» առանձին դրվագներ գողտրիկ նովելներ են հիշեցնում: Այդպիսի օրինակ կարող է ծառայել Տրդատ Բագրատունու պատմությունը. Տրդատը, տգեղ լինելով հանդերձ, ամուսնացել էր գեղեցկուհի արքայադուստր Երանյակի հետ ու, չհանդուրժելով կնոջ քամահրական վերաբերմունքը, ապստամբել Տիրան արքայի դեմ:

«Հայոց պատմության» կառուցվածքն առանց չափազանցության կարելի է կատարյալ անվանել: Այս պնդումը հիմնված է նրա տարբեր հատվածների, գլուխների, պարբերացման զարմանահրաշ համամասնության, դրանց ներդաշնակ, հաջորդականությունն ու հակադրությունը զուգակցող, հերթագայության վրա: Աշխատության տարբեր մասերը, ինչպես նաև ամբողջ ստեղծագործությունը, կատարելության դրոշմ են կրում: Անկասկած է, որ սեփական պատմահայեցողությունից զատ, Խորենացին ղեկավարվել է նաև գրական ստեղծագործության գեղագիտական չափանիշներով: Այս երկու հայեցակետերի զուգակցումն էլ ստեղծագործությանը հաղորդել է այն անկրկնելի ինքնատիպությունն ու համապարփակությունը, որով աչքի է ընկնում «Հայոց պատմությունը»:

Նրան վիճակված էր դառնալ նաև այն ստեղծագործությունը, որը երկար ու ձիգ դարերի ընթացքում կատարելատիպ էր դառնալու ոչ միայն պատմագրական, այլև մնացյալ բոլոր գրական ժանրերի երկերի համար: Այս երևույթը հիմնված է երկու կարևոր հանգամանքների վրա: Մեկը՝ Մովսես Խորենացու ստեղծագործության մեջ հելլենական մտքի և մատենագրության ազդեցության (այդ բառի ամենալավ իմաստով) կուտակումն էր, մյուսը՝ նոր, զուտ հայեցի մտածողության ստեղծումը: Իրենց համաձուլությամբ նրանք կազմեցին այն անսպառ աղբյուրը, որի լույսը ճառագում էր հայոց միջնադարում և հասել է մինչև մեր օրերը:

«Հայոց պատմությունը» մի կողմից, նրա հեղինակի հանճարի, մյուս կողմից, վեհ քաղաքացիականության արգասիքն է: Քաղաքացու, հայրենասերի կերպարը ի հայտ է գալիս ամեն մի էջում: Հեղինակի ապրումները բացահայտորեն ողբերգական երանգավորում ունեն: Մովսես Խորենացու ողբերգության ակունքը նրա քաղաքական համակրանքների և իղձերի երկատվածությունն է: Ժամանակի հայ հասարակության ղեկավար ուժերը՝ նախարարությունը( Պատմահոր աչքում ժողովրդի առաջընթացի մղիչ ուժը) և թագավորական իշխանությունը (օտարների հարձակման սպառնալիքի պայմաններում երկիրը համախմբող ու միավորողը), իրենց վեհ առաքելությունը կատարելու փոխարեն, օրհասական հակամարտության մեջ էին գտնվում: Այս ամենը զայրույթ և խոր վիշտ էր պատճառում Մովսես Խորենացուն, քանի որ այդ երբայրասպան բախումները դյուրացնում էին Հայաստանը շրջապատող երկու հզոր ռազմաքաղաքական ուժերի՝ Իրանի և Հռոմի (Բյուզանդիայի) քայքայիչ գործունեությունը և վերջիվերջո հանգեցրին հայրենի երկրի բաժանմանն ու քաղաքական անկախության կորստին: Մովսես Խորենացու ստեղծագործությունը պատմական դաս ու նախազգուշացում է նաև մեզ համար:

Այստեղից էր ծնվում «Հայոց պատմության» հեղինակի ձգտումը՝ պատմության տրամադրած օրինակներով հաղթահարել դառն իրականությունը, ներկային հակադրել ներդաշնակ և փառավոր անցյալը: Անցյալն օրինակ պետք է ծառայեր ներկայի համար, դաս՝ ներկայի բախտը տնօրինողներին, և առաջին հերթին՝ ժողովրդին, վարակելով նրանց քաղաքացիական պարտքի և հայրենասիրության զգացումներով:

Այն նպատակը, որ իր առջև «Հայոց պատմությունում» դրել էր Խորենացին, լիովին իրականացել է: Ինչպես որ Պատմահայրն էր տքնաջանորեն աշխատել «Հայոց պատմության» ստեղծման դժվարին խնդիրը իրականացնելու համար, այնպես էլ նրա Պատմությունն արարման օրվանից սկսած դարեր շարունակ «բանել է» մեծագույն արդյունավետությամբ: Այն հայ հասարակության բազում սերունդներ է



դաստիարակել, մասնակցել է հայ գործիչների ու մտավորականության գաղափարական մտքի կազմավորմանը, նաև այժմ դժվարին պատմական ուղիով ընթացող մեր ժողովրդին վարակում է անձնազոհության, խիզախության, իմաստնության և մարդկային բազում այլ առաքինությունների օրինակով:

Նոր ժամանակներում «Հայոց պատմությունը» դարձել է համաշխարհային գիտության հետաքրքրության առարկա: Բացի հայ գիտնականներից այն ուսումնասիրել են անգլիացի, ֆրանսիացի, գերմանացի, ռուս, իտալացի և բազմաթիվ այլ հետազոտողներ: «Հայոց պատմությունը» թարգմանվել է շուրջ տասնյակ օտար լեզուներով: Այդքան լայն տարածման և հետաքրքրության պատճառներից մեկը, անշուշտ, այն հանգամանքն է, որ Պատմահայրը իր ժողովրդի պատմությունը դիտարկել է համաշխարհային պատմության շրջանակներում: Նրա տեսադաշտում է գտնվել ողջ քաղաքակիրթ աշխարհը, երկրագնդի ողջ բնակեցված տարածքը՝ Բրիտանիայից մինչև Չինաստան:

Բարձունքում թևածող արծվի սրատես հայացքով նա ընդգրկում էր ողջ երկիրը և հենց այդ էլ հնարավորություն էր ընձեռում խորապես ըմբռնելու սեփական ժողովրդի տեղն ու դերը համաշխարհային պատմության մեջ, տալու նրա անմահ ու հպարտ բնութագիրը. «Թեպետ մենք փոքր ածու ենք և շատ սահմանափակ թվով և շատ անգամ օտար թագավորության տակ նվաճված, բայց և այնպես մեր աշխարհում էլ քաջության շատ գործեր կան գործված, գրելու և հիշատակելու արժանի»:

Այդ գործերից մեկն էլ հիրավի «Հայոց պատմության» ստեղծումն էր: Մենք ապրում ենք հոբելյանական տարում. 1500 տարի առաջ Մովսես Խորենացին ավարտեց իր վիթխարի մեծագործությունը՝ անմահ «Հայոց պատմությունը»:

# ԱՐՔԱՅԱԿԱՆ ԽՈՍՔԸ ՄԵՐ ԿՄՆԱ ՀԱՎԵՏ

**Հայաստանի գրքասերների ընկերության խնդիրների մասին զրուցում են մեր ամսագրի աշխատակից ԻՍԿՈՒՀԻ ԿԻՐԱԿՈՍՅԱՆԸ և «Հայ դպրություն» ընկերության վարչության նախագահ ԼԵՎՈՆ ՄԻՐԻՋԱՆՅԱՆԸ:**

Ի. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ.— Պատրաստվում էի գալ «Հայ դպրության» վարչություն ու հանդիպել Ձեզ հետ. և ակամայից հիշեցի սիրված քառյակներից մեկը. «Ժանգոտվում է ոսկին: Քայքայվում մետաղը: /Փշրվում մարմարը: Վերջ ունի ամեն բան/: Ամենակայունը թախիծն է կյանքում / Եվ հարատևը՝ խոսքն արքայական»: Արդարև, ոգու ոչ մի ստեղծագործություն չի վեհացրել մարդուն այնպես, ինչպես գիրքը, առանց որի մենք դատապարտված կլինեինք մնալու մեր անմիջական անձնական փորձի նեղ շրջանակներում: Գիրքը ոչ միայն ժողովրդի պատմական հիշողության շտեմարանն է, այլև ազգային մշակույթի հիմքը, հասարակության զարգացման, առաջընթացի աղբյուրը: Դպրության առանձնակի դերն առավել ևս կարևորվում է Հայաստանի պատմության մեջ, հայ ժողովրդի գոյապայքարի հարյուրամյակներում...

*Լ. ՄԻՐԻՋԱՆՅԱՆ.— Շատ ուրախ եմ, որ մեր ընկերության մասին զրույցը Դուք սկսում եք ոչ միայն քնարական, այլև պատմափիլիսոփայական նախաբանով: Բանն այն է, որ, անկախ մեր աշխատանքի բնույթից, այսինքն այն բանից, որ մենք գրքի հետ կապված հիմնարկ ենք, տարիների ընթացքում մի տեսակ վարժվել ենք հասարակական կազմակերպությունների բաժին ընկած ճակատագրին: Իսկ այդ ճակատագիրը, ինչպես երևի գիտեք, առավելապես աչքի է ընկնում պաշտոնական շրջանների անտարբերությամբ: Անկախ դրանից, տասնհինգ տարի է արդեն, ինչ մեր ընկերությունը հետևողականորեն գործում է՝ հանրապետության աշխատավորության, երիտասարդության ու աշակերտության շրջանում զարգացնելով առավել սեր և գիտակից վերաբերմունք դեպի գիրքը, ժողովրդականացնելով հայրենի մշակույթը:*

*Իհարկե, բյուրոկրատական շրջանների կամ առանձին պաշտոնյաների անտարբեր վերաբերմունքը բնավ էլ հասարակայնության կամ ժողովրդի վերաբերմունքը չէ: Ով՝ ով, բայց գոնե մենք լավ գիտենք այն կաթոգին սերն ու նվիրվածությունը գրքի հանդեպ, որ ունի մեր ժողովուրդը: Այդ հրաշալի, ինչ-որ տեղ գուցե անօրինակ, գրքի սերը, որ շատ դեպքերում վերաճել է պաշտամունքի, ամենևին էլ միայն «համատարած գրագիտության» յոթ տասնամյակների արգասիքը չէ: Դեռևս V դարում Սահակ Պարթևին, Մեսրոպ Մաշտոցին և նրանց հարյուրավոր աշակերտներին հաջողվել է ժողովրդի ամենատարբեր խավերի մեջ և Հայաստանի բոլոր վայրերում վառել գրագիտության անշեջ հուրը: Հասել է ժամանակը ասելու, որ մեծ, շատ մեծ է հայոց եկեղեցու դերը տասնյակ հազարավոր մատյանների ստեղծման, գիտությունների և ընդհանրապես մշակույթի զարգացման գործում: Հայաստանը պատուհասած բազում արհավիրքների հետևանքով, ավաղ, ոչնչացել են նաև հազարավոր ու հազարավոր ձեռագիր մատյաններ, գրքեր, որոնք եթե մնային, մեր մշակութային արժեքները այսօր հարյուրապատիկ ավելին պիտի լինեին:*

*Հայ ժողովուրդ և գիրք հասկացողությունները շաղկապված են պատմականորեն: Այդ պատճառով հայ գրքին ու մշակույթին մատուցած ամեն մի ծառայություն հասարակական արժեք է ստանում:*

Ի. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ.— Արդեն երկու տարուց ավելի է, ինչ մենք ապրում ենք ասես ժամանակից դուրս, մեր բոլոր մտքերն ու զգացումները բևեռված են Արցախին, նրա ազգային-ազատագրական պայքարին: Մինչդեռ կյանքն ընթանում է իր հունով, մենք շարունակում ենք աշխատել, մեծացնել մեր երեխաներին, փորձում ինչ-որ բան փոխել մեր գոյության քարացած կաղապարներում, մասնակցում ինչ-որ միջոցառումների: Այսպես, անցյալ տարվա վերջերին կայացավ Հայաստանի գրքասերների ընկերության համագումարը: Այն հրավիրվել էր հանրապետության համար շատ բարդ ժամանակ և ելույթների մեծ մասը, ինչպես և կարելի էր սպասել, նույնպես մեր հոգու ցավի մասին էր...

*Լ. ՄԻՐԻՋԱՆՅԱՆ.— Այո՛, իրավացի եք, վերջին երկու տարին բոլորովին նոր մի ժամանակաշրջան է ամենքիս կյանքում: Անօրինակ, աննախադեպ ժամանակաշրջան: Իր մայր հայրենիքի հետ Արցախի վերամիավորման պայքարը քաղաքականապես և ըստ ամենայնի հասունացրեց մեծին ու փոքրին, զինեց հայրենասիրության, ազգային արժանապատվության մի նոր, կատարյալ իմացությամբ: Մենք վերջնականորեն ճանաչեցինք թե ով ով է: Ապագա պայքարի համար սա շատ կարևոր ձեռքբերում է:*

*Գրքասերների հանրապետական IV համագումարը տեղի ունեցավ հանրապետության շրջափակման ամենաթեժ օրերից մեկում՝ անցյալ տարվա սեպտեմբերի 29-ին: Դուք ճիշտ բացատրեցիք. բոլոր ելույթներում ընդհանուր մի ցավ կար՝ Արցախի ցավը:*

*Արցախը մեզ համար միայն զգացական երևույթ չէ: Նա մեր հայրենի եզերքն է, մեր արյունակից հողը, մեր հինգհազարամյա պատմության բաղկացուցիչ մասը: Քաղաքական գործիչները և բոլոր նրանք, ովքեր չկամեցան ու չեն կամենում ընդունել Արցախյան հողի բնիկ հայկական լինելը, մի՞թե կարող են հերքել հազարամյակների պատմական իրողությունը: Հինգերորդ դարի սկզբին, երանելի Մեսրոպ Մաշտոցի ձեռքով, Արցախում ևս ճառագեց Հայոց նոր այբուբենի լույսը: Այդ ժամանակներից են կերտված Արցախի հնագույն վանքերն ու եկեղեցիները, որոնք, միաժամանակ, կրթության ու լուսավորության փառավոր կենտրոններ էին, առաջին կենտրոնները: Արցախի հնօրյա մշակույթը անգնահատելի հարստություն է քաղաքակիրթ (ճշմարտապես քաղաքակիրթ) աշխարհի համար: Մեր պարտքն է յուրօվսանն օգնել այդ մշակույթը աշխարհին ներկայացնելու շատ կարևոր գործին:*

*Համագումարից անմիջապես հետո, հետևելով մեր օրինակին, Արցախի գրքասերներն իրենց ընկերությունը վերակոչեցին «Հայ դպրություն» և միավորվեցին մեզ հետ: Միութենական համագումարի ժամանակ նրանց պատգամավորները մեր պատգամավորության կազմում էին:*

Ի. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ.— Խորհրդային հասարակությունն այժմ դեմոկրատացում է ապրում: Հրապարակայնության թարմ օդը ներխուժել է մեր հասարակական կյանքի շատ ոլորտներ: Բնական է ենթադրել, որ այդ կենարար գործընթացը չէր կարող շրջանցել և գրքասերների ընկերությունը, որի բազմաստիճան ղեկավարումը, ըստ էության, կուսակցական, խորհրդային և պետական մարմինների կառուցվածքի կույր ընդօրինակում է: Եթե զերծ մնանք ցանկալին որպես իրականություն ներկայացնելու գայթակղությունից, ապա պետք է խոստովանենք, որ ընկերության անդամների մի զգալի մասն իր առաքելությունը տեսնում է ոչ թե կուլտուր-լուսավորական գործունեություն ծավալելու, այլ սեփական սպառողական շահերը բավարարելու, դեֆիցիտային գրքեր ձեռք բերելու մեջ: Քիչ չեն նաև այնպիսիք, ովքեր իրենց անդամությունը ցանկացած կամավոր ընկերության ընկալում են իբրև անուղղակի պարտադիր հարկադրման միջոց:

Հանրապետության գրքասերների համագումարում միաձայն ընդունվեց որոշում ընկերության վերանվանման մասին և այժմ այն կոչվում է «Հայ դպրություն». ի՞նչ է սա՝ ցուցանակի փոփոխու՞մ, ճակատը թարմացնելու ցանկությո՞ւն (մեր հին հիվանդությունը), թե՞ նոր ծրագիր, նոր խնդիրներ, նոր մոտեցումներ:

*Լ. ՄԻՐԻՋԱՆՅԱՆ.— Մեր ընկերության նոր անունը՝ «Հայ դպրություն», ամենևին էլ, Ձեր խոսքով ասած՝ ցուցանակի փոփոխություն չէ միայն: Դա նույնպես ժամանակի պահանջի արգասիք է: «Գրքասեր» անունը, հակառակ բառի բուն իմաստի հարազատ լինելուն, շատերի զարմանքն էր հարուցում՝ ի՞նչ է, միայն ձեր կազմակերպության անդամնե՞րն են գիրք սիրում... Մեկ ուրիշ պատճառ էլ կար. բոլոր հանրապետությունների համապատասխան ընկերությունները պարտադիր կարգով ունեին գրեթե միևնույն աշխատանքային ծրագրերը: Մեզ հաճախ պարտադրվում էր ավելորդ, անիմաստ, ձևական միջոցառումների մի ամբողջ հեղեղ: Օրինակ, պատկերացնու՞մ եք, մեր կենտրոնական վարչությունը մեզ պարտավորեցնում էր միջոցառումներ անցկացնել նվիրված խորհրդային ապրելակերպին, կոմունիստական առաջին շաբաթօրյակի հերթական տարեդարձին... Ծիծաղելի է, չէ՞: Բայց երանի միայն ծիծաղելի լիներ... Բարեբախտաբար, ժամանակները փոխվեցին: Եվ որպեսզի մենք լիովին անկախ կազմակերպություն դառնանք, որոշեցինք որդեգրել մի այնպիսի անուն, որը լիներ ըստ ամենայնի ազգային և մեզ ազատեր ավելորդ հարկադրական պարտավորություններից:*

*«Հայ դպրությունը» մշակութային հասարակական կազմակերպություն է, որը ծավալում է կրթական, լուսավորական, ինչպես նաև բարեգործական համազգային գործունեություն: Մեր համագումարի որոշման կետերից մեկը այսպես է ձևակերպված. «Ընկերության ամբողջ գործունեության հիմքում ունենալ ազգային միասնականության նշանաբանը»:*

*Այնպես որ, ինչպես տեսնում եք, մեր ընկերության և՛ անունն է նոր, և՛ խնդիրները:*

**Ի. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ.**— Որոշ իմաստով համանման խնդիրներ են ծառացած նաև մեր ամսագրի խմբագրության առջև: Վերջին երկու-երեք տարվա ընթացքում «Լենինյան ուղիով» ամսագրի տպաքանակը նկատելիորեն նվազեց: Անցնում են համեմատաբար անհոգ գոյության ժամանակները, երբ առանձնապես մեծ ջանքեր չէին պահանջվում տպաքանակի ապահովման համար: Բաժանորդներ կորցնելու սպառնալիքը մեզ, անշուշտ, ստիպում է առավել մեծ ուշադրություն դարձնել նյութերի արդիականությանը, դրանց պատրաստման մակարդակին: Որոշ աշխատանք այդ ուղղությամբ տարվում է, շատ բան դեռևս պետք է արվի: Այդուհանդերձ, ոչ թե արդարացման նպատակով, այլ օբյեկտիվության համար ուզում եմ նշել նաև այն, որ ամսագիրը ինչ-որ իմաստով հասարակության կուսակցական կյանքի հայելին է, և մեր հետագա աշխատանքի հաջողությունը զգալիորեն պայմանավորված է նրանով, թե ինչպես է կուսակցությունը վերակառուցելու իր գործունեությունը, որքանով կոմունիստներին կհաջողվի տիրել նախաձեռնությանը այս բարդ ժամանակներում:

*Լ. ՄԻՐԻՋԱՆՅԱՆ.— Ես Ձեր ամսագրի բաժանորդներից եմ։ Լավատես եմ նրա հեղինակության հարցում։ Վերջին հաշվով, Ձեր ամսագիրն էլ պարտավոր է դառնալ ազգային: Ես, իհարկե, հարցը պարզունակ ձևով չեմ պատկերացնում։ Բայց մի բան, կարծում եմ, պարզ է. ժամուլի ուժը ճշմարտությանը հավատարիմ մնալու, ճշմարտությունը ժամանակին և մինչև վերջ ասելու մեջ է։*

**Ի. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ.**— Մեզ հուզող չլուծված հարցերը, անշուշտ, շատ են, և դրանց թվում գլխավորներից են՝ տպաքանակների վրա ներազդելու անհնարինությունը, գրքերի թանկությունը, անհրաժեշտ հրատարակությունների ձեռքբերման բարդությունը: Բայց սա, ինչպես ասում են, դրամի մեկ երեսն է: Իսկ ես ահա թե ինչի վրա եմ ուզում ուշադրություն հրավիրել՝ ըստ պաշտոնական տվյալների ԽՍՀՄ-ում քաղաքացիների անձնական գրադարաններում պահվում է մոտ 50 միլիարդ գիրք, մինչդեռ պետական գրապահոցներում՝ ընդամենը 5 միլիարդ: Սա հսկայական, անգնահատելի ազգային հարստություն է: Նման տվյալները Հայաստանի վերաբերյալ չեն հրապարակվել, սակայն վստահորեն կարելի է ասել, որ այդ իմաստով մենք էլ բավականին հարուստ ենք: Տարվո՞ւմ է արդյոք որևէ աշխատանք անձնական հարուստ գրադարաններ ունեցողների հետ, կան նրանց մեջ այնպիսիք, ովքեր իրենց անձնական գրադարանները ի սպաս են դնում հանրությանը:

*Լ. ՄԻՐԻՋԱՆՅԱՆ.— Այո, մոտավորապես մեկը տասի հարաբերությամբ մեր երկրի գրքային ֆոնդը կենտրոնացված է պետական և անձնական գրադարաններում։ ԽՍՀՄ գրքասերների ընկերության ստեղծման օրվանից այս երևույթը, որպես պրոբլեմ, գտնվում է միութենական մարմինների ուշադրության կենտրոնում։ Ամբողջ խնդիրն այն է, թե ինչպես առավել արդյունավետ օգտագործել այս ահռելի գրքային հարստությունը։*

*Մեզանում աշխատանքը տարվել է հիմնականում երկու ուղղությամբ։ Նախ՝ Հանրապետության քաղաքներում և շրջաններում մեր ընկերության միջոցով ի հայտ են բերված (իհարկե, ոչ վերջնականորեն, լրիվ) խոշոր՝ հինգ հազար և ավելի գիրք պարունակող անձնական գրադարաններ։ Դրանք բոլորը քարտավորված են։*

*Մյուս կողմից, մենք կազմակերպված աշխատանք ենք ծավալում, որպեսզի անձնական գրադարաններում կուտակված գրականությունը միաժամանակ դառնա հանրության համար օգտագործելի։ Սկզբնական շրջանում այս աշխատանքը միայն կասկած ու վախ էր հարուցում ամենուրեք. «Ես իմ անձնական գրադարանն ինչպե՞ս տրամադրեմ ուրիշներին»...*

*Սակայն ժամանակի ընթացքում մարդկանց հոգեբանությունը փոխվում է. Ներկայումս մեր հանրապետությունում հաշվառված է 308 անձնական խոշոր գրադարան, դրանցից 88-ը՝ գյուղերում։ Օրինակնե՞ր եք ուզում, խնդրեմ. ժողովրդական կրթության և գիտության աշխատողների արհմիության Թալինի շրջկոմի նախագահ Համազասպ Մովսիսյանը իր անձնական գրադարանը վաղուց բացել է շրջկենտրոնի և իր ծննդավայր Շղարշիկ գյուղի ընթերցողների առջև։ Մաստարա գյուղում մեծ ու փոքր օգտվում են մանկավարժ Հրանտ Հովհաննիսյանի անձնական գրադարանից։ «Էլեկտրոն» արտադրական միավորման մեր ընկերության բաժանմունքի նախագահ Էմմա Փաշիկյանի գրադարանը տրամադրված է կոլեկտիվի օգտագործմանը։*

**Ի. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ.**— Ինչպես է Հայաստանում գրքասերների ակումբների վիճակը: Պոեզիայի, հնատիպ գրքի, ֆանտաստիկայի սիրահարները հնարավորություն ունե՞ն արդյոք հավաքվելու մի տանիքի տակ:

*Լ. ՄԻՐԻՋԱՆՅԱՆ.— Ընկերությունն ակումբներ շատ ունի, որոնք տեղերում համախմբում են մշակույթի և գրականության տարբեր բնագավառների ու ժանրերի սիրահարներին։ Այդ ակումբներից կարող եմ նշել «Ատոմը» (Երևանի ֆիզիկայի ինստիտուտ), «Գիրքը» (Երևանի պիոներների և դպրոցականների քաղաքային պալատ) «Հովհաննես Շիրազ»-ը (Ավտողողերի գործարան), «Ճանաչել գիմաստութիւն և զխրատ»-ը (մայրաքաղաքի Ստ. Շահումյանի անվան քաղխորհուրդ), «Զոդիակը» և «Պրոմեթևսը» (Կիրովականի «Էլեկտրոն» և «Ավտոմատիկա» գործարաններ), «Իմպուլսը» (Դիլիջան) և այլն։*

**Ի. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ.**— Ընկերությունը ունի՞, արդյոք, գրքի հրատարակման և իրացման ռեալ հնարավորություններ: Ինչպիսի՞ աշխատանք է տարվել այդ ասպարեզում անցած տարիներին:

*Լ. ՄԻՐԻՋԱՆՅԱՆ.— Ցարդ հրատարակել ենք շուրջ յոթանասուն անուն գիրք։ Դրանց զգալի մասը կենսամատենագիտական բնույթի է և նպատակ ունի ընթերցողներին, հատկապես աշակերտներին և ուսանողներին ամփոփ տեղեկություն տալ հայ նշանավոր գրողների կյանքի ու գործունեության մասին, ինչպես նաև ներկայացնել այդ հեղինակների գրքերի մատենագիտությունը։ Որպես կանոն, այդ հրատարակություններում տրվում են նաև այլ տեղեկություններ, որոնք վերաբերում են հեղինակների ստեղծագործական կապերին, նրանց թարգմանական գործունեությանը և այլն։ Կենսամատենագիտական գրքեր ենք հրատարակել Ավետիք Իսահակյանի, Վահան Թեքեյանի, Եղիշե Չարենցի, Դերենիկ Դեմիրճյանի, Հմայակ Սիրասի, Վախթանգ Անանյանի, Պարույր Սևակի, Խաժակ Գյուլնազարյանի, Սուրեն Մուրադյանի և այլ գրողների մասին։ Հրատարակել ենք «Քրդական գիրքը Հայաստանում» գրքույկը, որը արձագանք հարուցեց նաև արտասահմանում։ Բանն այն է, որ ԽՍՀՄ-ում քրդերեն գրքեր տպագրվում են միայն Հայաստանում. մեր հրատարակչությունը միակն է, որը պատկերացում է տալիս խորհրդային քրդական գրքի անցած հիսնամյա ճանապարհի մասին։*

*Մեր հրատարակած «Բայրոն, Նամակներ Հայաստանի և հայերի մասին» եռալեզու (հայերեն, ռուսերեն, անգլերեն) գիրքը սպառվեց (իսկ տպաքանակը փոքր չէր՝ 5 հազար) բառացիորեն 1—2 օրում։*

*Հրատարակել ենք հայագիտական, գրականագիտական, գեղարվեստական (Հովհ. Թումանյանի պատմվածքները ռուսերեն, Հայաստանի մասին ուկրաինական բանաստեղծների ստեղծագործությունների ժողովածուն) և այլ գրքեր։ Պրոպագանդել ենք Մատենադարանն ու նրա հազվագյուտ գանձերը (Բ. Չուգասզյան, «Ձեռագրերի աշխարհում» և «Ձեռագրերի հետքերով»)։*

*Ներկայումս մեր հոգսը մի փոքրիկ տպարան ստեղծելն է, ինչը հրատարակչական գործունեություն ծավալելու ավելի մեծ հնարավորություններ կընձեռի։*

**Ի. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ.**— Ես «Книжное обозрение» թերթի մշտական բաժանորդն եմ: Մինչև վերակառուցումը նրա հիմնական ծառայությունը նոր գրքերի աշխարհում կողմնորոշվելուն օժանդակելն էր, սակայն վերջին տարիներին շաբաթաթերթի էջերում մշտապես տպագրվում են չափազանց հետաքրքիր նյութեր ամենաբնույթ հարցերի շուրջ: Թերթը բավականին լուրջ ուշադրություն է նվիրում, մասնավորապես, գրքի հրատարակման պրոբլեմներին, զգալի աշխատանք է տանում պահանջարկ չունեցող գրականության լույսընծայումը կանխելու նպատակով: Այդ առումով ինչպե՞ս եք գնահատում «Գրքերի աշխարհի» գործունեությունը:

*Լ. ՄԻՐԻՋԱՆՅԱՆ.— «Գրքերի աշխարհը» բավականին աշխույժ ու սիրված թերթ է։ Չեմ կարող չհամաձայնել, որ կարող էր ավելի հանգամանորեն արտացոլել գրքի հետ կապված այնպիսի պրոբլեմներ, ինչպիսիք են, ասենք, պահանջարկի ուսումնասիրումը, ձեռագրերի պլանավորման սկզբունքները, որակի հարցերը և այլն։ Դրանում «Հայ դպրության» էլ իր մեղքի բաժինն ունի, քանի որ մենք մեր թերթին նյութեր քիչ ենք մատակարարում։*

*Ամենակարևորն այն է, որ «Գրքերի աշխարհն» ունի իր ուրույն դեմքը, իր ասելիքը։ Կարծում եմ, շատ կարևոր են նրա կազմակերպած հարցազրույցներն ու հարցաթերթիկները հատկապես հրատարակչությունների արտադրանքի, տարվա լավագույն գրքերի և այլնի վերաբերյալ։*

**Ի. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ.**— Ինչպե՞ս է պրոպագանդվում հայ մշակույթը, գրականությունը Հայաստանի սահմաններից դուրս: Այսօր դա բացառիկ կարևոր է:

*Լ. ՄԻՐԻՋԱՆՅԱՆ.— Ընկերության կենտրոնական վարչության նախաձեռնությամբ և աջակցությամբ 1988 թվականին Մոսկվայում կազմակերպեցինք Սայաթ-Նովայի անձնական իրերի և նրան վերաբերող գրական-գեղարվեստական նյութերի ցուցահանդես։ Առանց չափազանցության կարելի է ասել, որ այս ցուցահանդեսը դարձավ երևույթ և կարևոր դեր խաղաց հասարակայնությանը մեր հանճարեղ բանաստեղծին ներկայացնելու գործում։ Ի դեպ, այդ օրերին Մոսկվայում գտնվող մի շարք օտարերկրյա պատվիրակությունների ներկայացուցիչներ նույնպես ցուցահանդես այցելելու առիթներ ունեցան։*

*Հայաստանից դուրս կազմակերպված ցուցահանդեսներով ներկայացրել ենք հայ նկարիչների մատենանիշային ստեղծագործությունները (էքսլիբրիս)։ Ընկերության պատվիրակությունները քանիցս մասնակցել են Միության տարբեր քաղաքներում կազմակերպված գրքի տոներին, հանդես եկել հայ մշակույթի մասին ելույթներով ու հաղորդումներով։*

*Հանրապետության շրջափակված վիճակը անկատար թողեց Երևանում «Հայ դպրության» ծրագրած միջազգային սիմպոզիումի իրականացումը, ինչպես նաև շատ ուրիշ մտահղացումներ խափանեց։*

Ի. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ.— Մեր զրույցի վերջում ուզում եմ հետագա հաջողություններ մաղթել «Հայ դպրությանը», մանավանդ որ Երևանի կենտրոնական փողոցներից մեկում գտնվող հոյակերտ շենքը, ուր Հայաստանի գրասերները վերջերս բնակարանամուտ տոնեցին, կարող է դառնալ իսկական լուսավորական օջախ և մըշտական հավաքատեղի բոլոր նրանց համար, ում թանկ են մայրենի լեզուն, գրականությունը, մշակույթը: Եվ վերջին ավանդական հարցը՝ ի՞նչ անելիքներ ունի ընկերությունը մոտակա ժամանակներս:

*Լ. ՄԻՐԻՋԱՆՅԱՆ.— Ընկերության աշխատանքները տարվելու են ոչ թե ծավալվելու, այլ խորանալու սկզբունքով, հիմնականում հետևյալ ուղղություններով՝ մայրենի գրականություն, լեզու, պատմություն, հայ գրքի պատմություն, կրոն և հայ եկեղեցի, արտաքին և ներքին սփյուռք, միջազգային մշակութային կապեր։*

*Ներկայումս պատրաստվում ենք արժանավայել միջոցառումներով մասնակցելու Մովսես Խորենացու «Հայոց պատմության» ստեղծման 1.500-ամյակին նվիրված տոնակատարություններին։ Մեր IV համագումարի որոշմամբ, դիմել ենք ՅՈՒՆԵՍԿՕ-ին՝ մեր կողմից խնդրելով այդ բացառիկ նշանակության հոբելյանը նշել համաշխարհային մակարդակով։*

*Սերտ համագործակցություն է ստեղծված Մայր Աթոռ Ս. Էջմիածնի հետ, որն օգնում է ընկերության անդամների համար պարբերաբար կազմակերպելու ժողովրդի պատմության մեջ հայ եկեղեցու որոշիչ դերը լուսաբանող դասախոսություններ, ձեռք բերելու գրականություն և այլն։*

*պագանդենք հայկական մշակույթը Հայաստանի սահմաններից դուրս։ Մենք այսօր խորն ենք ընկալում այն ցավալի ճշմարտությունը, որ ժողովուրդները մեր բազմահարուստ և ինքնատիպ մշակույթի մասին այնքան էլ հստակ պատկերացում չունեն։ Հայ ազգի պատմությունը իր հերոսական և ողբերգական էջերով, ինչպես նաև մեր մշակութային արժեքները այսօր հարկավոր է բոլոր հնարավոր միջոցներով ծանոթացնել և ներկայացնել մոտ ու հեռու ժողովուրդներին՝ թոթափելով նրանց գիտակցության մեջ մեր հակառակորդների ստեղծած թյուր պատկերացումները։*

*Մեր զրույցն սկսվեց արվեստ դարձած «արքայական խոսքի» հարատևության մասին Աննա Ախմատովայի քառյակով։ Եկեք ավարտենք Վահան Տերյանի տողերով.*

Բարբառներ շատ կըգան ու կանցնեն անհետ,
Արքայական խոսքը մեր կըմնա հավետ:

*«ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ», № 5, 1990 թ.։ Լույս է տեսնում հայերեն և ռուսերեն։*

*Հանձնվել է շարվելու 9. 04. 1990 թ.։ Ստորագրվել է տպագրելու 31. 05. 1990 թ.։ ՎՖ 01421։ Ֆորմատ 70×108 1/16։ Թուղթ՝ տպագրական № 2։ Օֆսեթ տպագրություն։ 8,4 պայմանական տպագրական մամուլ։ 9,4 հաշվային-հրատարակչական մամուլ։ Տպաքանակը՝ 8232։ Պատվեր՝ 323։ Գինը՝ 25 կոպ.։*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան։ 375023, Երևան, Օրջոնիկիձեի պողոտա № 2։*
Типография издательства ЦК КП Армении. 375023, Ереван, проспект Орджоникидзе, 2.